

**ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 19-ԻՆ** *լրացավ*
*Սովետական Միության կոմունիստական կուսակցության*
*Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար*
*Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ծննդյան 70-ամյակը:*
*Հայաստանի բազմահազար պիոներները*
*ջերմորեն և սրտանց շնորհավորում են*
*թանկագին Լեոնիդ Իլյիչին՝*
**ԾՆՆԴՅԱՆ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ:**

*Ամսագրի այս համարից սկսած, տպագրում ենք գրող Գրիգոր Ջանիկյանի վիպակը՝ նվիրված Արփա-Սևան կառույցի շինարարների հերոսական աշխատանքին, որին իրենց մասնակցությունն են բերում շինարարների երեխաները, ավագների հայրենանվեր գործի ռոմանտիկ շնչով տոգորված։*

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# ՄԻ ԵՐԿԱՐ, ՄԻ ԿԱՐՃ ԱՐՁԱԿՈՒՐԴ

(ՎԻՊԱԿ)

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

## ԱՅՍ ԼԱՐՎԱԾ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՍԿԻԶԲԸ

— Չէ՛, Հայաստանում խսկապե՞ս հովազներ չեկան,— արևից աչքերը կկոցեց շեկ տղան։

Թվում այնպես նայեց, որ նա կախեց գլուխը։ Եվ դա առաջին հիասթափությունը չէ, որ շեկ տղան ապրում էր Հայաստան գալուց ի վեր։

«Նարեկը մտքում ծիծաղում է վրաս,— մտածում էր նա,— ինձ հիմարի տեղ է դնում, որ այդպիսի հասարակ բաները չգիտեմ, իսկ եթե իմ մեկնելու օրը մեր գյուղում լինե՞ր...»

Ամուսամենայնիվ ասաց, թե իր մեկնելու օրը ինչ էր կատարվում գյուղում։ Վաղ առավոտից բոլոր երեխաները փոխանակ անտառ գնալու, հավաքվել էին իրենց խրճիթում և քարտեզի վրա որոնում էին Հայաստանը։ Գյուղում եղած բոլոր քարտեզների վրա Հայաստանը մի բարակ, հապիվ նշմարվող նարնջագույն գիծ էր, և Վիտյան տղաների դեմքին հիասթափություն տեսավ։

— Իսկ ինձ թվում է,— Հայաստանը չգիտեմ ումից պաշտպանեց նա,— որ այնտեղ նարինջներ են հասնում, ա՛յ, այսպիսի խոշոր նարինջներ։

— Դա՛հ, բա՜ն ասացիր,— ծպպացրեց Վասյան, որ մի անգամ ծնողների հետ հանգստացել էր Սոչիում,— նարինջը ծովափում է լինում, իսկ Հայաստանում...

— Հայաստանում ի՞նչ...

— Հայաստանում,— մի փոքր կմկմալուց հետո վրա տվեց Վասյան,— ավազոտ անապատներ են, այնտեղ երեկոյան, երբ արևը մայր է մտնում, մռնչում են հովազները։

Բոլորը նայեցին իրար ու ձայն չհանեցին։ Վերջալույսի կարմիրի մեջ կարմիր բաշերով հովազների մռնչոցը իրոք սարսռեցնող էր, և Վիտյան հայացքը բարձրացնելով, հաղթական նայեց ընկերներին։ Հանկարծ կարմանքով նկատեց, որ հմրևանի աղջիկը Իրան գլուխը խոնարհել ու հազիվ է զսպում արցունքները։

Սևանի կողմից քամի սկսվեց։ Երկու տղաները շրջվեցին բարձր խոտերի մեջ և նայեցին լճի կողմը։ Նրա ալիքները ուռչում էին և այնպես ծառս լինում, կարծես ուզում էին ավելի վեր բարձրանալ, քան այն բլուրն է, որի վրա պառկած էին տղաները։

— Շուտով անձրև կսկսվի,— ծնկները գրկելով ասաց Նարեկը։

Վիտյան մեքենաբար չորս կողմ նայեց։ Իրենց կողքին մի ճեղքված խաչքար էր ընկած, իսկ չուրջը օձագալար զիգզագներ էին գծում Հայաստանի լեռները։ Մի՞թե սա հենց այն երկիրն է, որ ինքն այդքան երազում էր տեսնել, անցավ տղայի մտքով։ Մեկ տարի անընդհատ հայրն ու մայրը Արփա-Սևանի հեռավոր բանավանից գրում էին, որ եթե Վիտյան ուսումնական տարին լավ վերջացնի ու չատ չչարկացնի պապիկին, ամառային արձակուրդին կհրավիրեն իրենց մոտ։ Բայց ահա եկել է ինքը, և ձանձրույթից չգիտի ինչ անի։ Ասենք, ի՞նչ կարելի է անել այս լերկ լեռան գագաթին, որտեղ ընդամենը մի հորան կա ու բանվորական մի քանի բարաք։ Դեռ լավ է, որ Նարեկն այստեղ է, թե չէ...

Մոտիկ, չատ մոտիկ շանթ ձայթեց։ Ամպերը այնքան էին ցած կախվել (կամ լեռը այնպես էր միրճվել երկնքի կուրծքը), որ շանթի կծիկը դղրդոցով կպավ ժայռերին ու գլորվեց լեռան լանջով։ Թվաց, թե երկնաշարժ սկսվեց։

— Նարե՛կ, Նարե՛կ,— պատշգամբից ձայնեց մայրը,— որտե՞ղ ես, տո՛ւն արի։

Նարեկը ձայն չհանեց։

— Գուցե իսկապես գնանք, հը՞,— մռայլվող երկինքին նայելով՝ կամաց ասաց Վիտյան։

— Ի՞նչ է, չլինի՞ վախենում ես,— հեգնեց Նարեկը,— թե՞ ձեր գյուղում ամպերը չեն որոտում։

Նա պառկել էր մեջքի վրա, փայլող աչքերով նայում էր կապարի նման ծանրացող երկինքին, ու նրա դեմքը ամբողջովին ողողված էր երջանկությամբ ու սարսափով։

— Նարե՛կ, տո՛ւն արի,— մայրը ձայնեց այս անգամ բանավանի կողքի սարալանջից։ Մայրը անդրավարտիք էր հագել, ու քամին դրոշի պես ծածանում էր դեղին մազերը,— տո՛ւն արի, ջութա՛կդ պարապիր, թե չէ հորդ կասեմ...

Նարեկը թաքնվեց խաչքարի ետևում։

— Գիտե՞ս ինչ ռեժիմ է սահմանել մայրս ինձ համար,— ընկերոջ կողմը շրջվեց նա։



Վիտյան բացասաբար շարժեց գլուխը: Որտեղի՞ց իմանար:

— Ուրեմն, առավոտյան կես ժամ պետք է լիցքային վարժություն անեմ, երկու ժամ ջութակ նվագեմ, մեկ ժամ գիրք կարդամ, երեք ժամ տեխնիկայով զբաղվեմ, քառասունհինգ րոպե հեռուստատեսային հաղորդումներ լսեմ... Մի խոսքով, դուրս է գալիս, որ ես ոչ թե արձակուրդ եմ եկել, այլ տաժանակրության:

Վիտյան չպատասխանեց, չնայած համաձայն էր Նարեկի հետ: Իսկ ինքը մի՞թե այսպես կանցկացներ իր արձակուրդը, եթե տանը լիներ: Հիմա իրենց գյուղում տղաները լճակի վրա թիավարում են այն հին նավակով, որից բորբոսի հոտ է գալիս, կամ էլ անտառում մոշ են հավաքում: Հաճախ պապի հետ գնում է գետափ՝ ձուկ բռնելու և պապը պատմում է հի՜ն, շա՜տ հին ժամանակների մասին, երբ իրենց գյուղը զբոսանքի էին գալիս ռուս իշխաններն ու եղնիկ որսում:

Թփերի ետևից աղջկա գլուխ երևաց: Տղաները զարմանքից վեր ցատկեցին: Նրանք նույնիսկ մի քիչ վախեցան, բայց հետո ամաչեցին դրա համար: Մի՞թե կարելի էր աղջկանից վախենալ:

— Բարև՛ ձեզ,— մոտենալով, ասաց աղջիկը:

Վիտյան ու Նարեկը այնպես էին անակնկալի եկել, որ ձայն չհանեցին:

— Այնտեղ, սարի մյուս կողմում եկեղեցու ավերակներ ու խաչքարեր կան,— շարունակեց աղջիկը,— Ես այս խոշոր կակաչները խաչքարերի արանքից եմ պոկել: Ավելի մեծերը կային, բայց քամին թոցրեց...— Աղջիկը ժպտաց: Նա ըստ երևույթին շատ էր մենակ և շատ էր ուրախ այս հանդիպման համար: Բայց տղաները ոտքից գլուխ զննում էին նրան և չէին հասկանում այդ բանը:

— Նա ուկրաինական առոգանությամբ է խոսում,— ի վերջո բերանը բացեց Վիտյան:

Նարեկը որսաց աղջկա հայացքը:

— Դու այստեղ ի՞նչ ես անում,— հարցրեց այնպես խիստ, կարծես աղջիկը իր տերության սահմանն էր մուտք գործել:

Բայց աղջկան թվաց, թե տղաները ուզում են զրույցի բռնվել իր հետ, ինչպես՝ ինքը: Նա ծաղիկները դրեց մի քարի ու պառկեց տղաների կողքին (նրա շրջազգեստը պարաշյուտի պես փքվեց): Ու նորից ժպտաց:

— Իմ անունը Կատյա է,— ասաց նա,— ես եկել եմ հայրիկիս մոտ անցկացնելու ամառային արձակուրդը: Իսկ ընդհանրապես Անդրկարպատներում եմ ապրում, այստեղից շատ հեռու է: Բայց այնպե՜ս էի երազում Հայաստան գալ, այնպե՜ս էի երազում: Գիտե՞ք ինչու:

Նարեկն ու Վիտյան թոթվեցին ուսերը: Շատ պե՞տք է իրենց:

— Ախր ես Արփա-Սևանում եմ ծնվել,— տղաների անտարբերությունը չնկատեց Կատյան,— հավատո՞ւմ եք, իմ ծննդյան վկայականում ծննդավայրի դիմաց

հենց այդպես էլ գրված է՝ Արփա-Սևան: Հայրիկս տասը տարի է այստեղ է աշխատում:

— Մե՞ծ բան,— դժգոհ ընդհատեց Նարեկը,— իմ հայրիկը առաջին օրվանից է աշխատում: Նա է Արփա գետի ափին առաջին պայթեցումը կատարել:

Կատյան վիճելու ցանկություն չուներ: Ընդհակառակը, նա բարեկամներ էր որոնում: Դրա համար էլ իսկույն համաձայնեց:

— Դե այդ մասին ո՞վ չգիտի,— վրա տվեց նա,— ես քո հայրիկին լավ եմ ճանաչում: Նա տեղամասի պետն է: Քեզ էլ եմ մի քանի անգամ բանավանի գետափի մոտ տեսել: Ես նույնիսկ գիտեմ, որ քո հայրը երդվել է այս լեռներից չիջնել, մինչև Արփայի ջրերը Սևան չհասնեն: Իհարկե, ափսոս է, որ աշխարհի ամենամեծ ու գեղեցիկ լճերից մեկը չորանա, բայց ինչ անեմ, իմ մայրիկը դա չի հասկանում: Սկզբում նա էլ է հայրիկի հետ այստեղ եկել, բայց հետո ձանձրացել է բանավանի տխուր կյանքից, երբ չորս տարեկան եմ դարձել, ինձ վերցրել, վերադարձել է տուն՝ Անդրկարպատներ: Իսկ հայրիկս չի կարողացել ընկերներից բաժանվել: Մայրիկի ասելով, իբր ամաչում է, չի ուզում վախկոտ երևալ:

Չէ, ամեն ինչից զգացվում է, որ Կատյան շատախոս է: Նա ըստ երևույթին վաղուց հասակակցի չէր հանդիպել:

— Շնորհակալություն քո արժեքավոր տեղեկությունների համար,— երբ աղջիկը լռեց ակնհայտ հեգնանքով ասաց Նարեկը,— ես կյանքումս այդպիսի հետաքրքիր պատմություն չէի լսել: Իսկ հիմա վե՞ր կաց ու գնա:

— Ե՞ս,— անակնկալի եկավ Կատյան:

— Այո՛, դո՛ւ,— նույնիսկ նրա կողմը չնայեց Նարեկը:

— Մենք այստեղ գաղտնի գործ ունենք,— ավելի առաջ գնաց Վիտյան:

Կատյան նայեց տղաներին ու զգաց, որ նրանք չեն կատակում: Նրանք պարզապես չէին ուզում իր հետ ընկերություն անել: Նա դանդաղ ոտքի կանգնեց, և դրանից նրա հագուստը վայր ընկնող պարաշյուտի տեսք առավ: Նա շրջվեց բանավանի կողմը, խռոված սկսեց վազել, իսկ հետո ուղղակի սլանում էր: Եվ ողջ ճանապարհին ոչ մի անգամ ետ չնայեց: Նույնիսկ չըհիշեց, որ ծաղկեփունջը մոռացել է քարի վրա:

— Տարօրինակ են աղջիկները,— նրա ետևից նայելով կամաց ասաց Վիտյան, կարծես փորձում էր արդարանալ ինչ-որ մեկի առաջ:— Բոլորն իրար նման են: Երբ ես Հայաստան էի գալիս, պապս ինձ ուղեկցեց մինչև մեր ճերմակ եկեղեցին: Եկեղեցու մոտ կանգնեց ու ասաց.

— Դե գնա՛, Վի՛տոկ, թող ճամփադ կանաչ լինի: Միայն, տե՛ս, չմոռանաս քո գյուղն ու պապիդ:— Նա առանց եկեղեցուն նայելու՝ երեք անգամ խաչակնքեց երեսը ու ետ դարձավ դեպի գյուղ: Իմ կոկորդը քոր եկավ, և ես սկսեցի սովորականից արագ քայլել: Ուսապարկը շալակած՝ քայլում եմ կեչուտի մոտով ու չգիտեմ ուրախ եմ, թե տխուր: Մեկ էլ թփերի միջից հայտնվեց Իրան: Մեր հարևան Իրան: Կանգնել, նայում է ինձ, ես՝ նրան: Չեմ հասկանում, թե ի՞նչ է ուզում: Բայց որ նրա հետ ինչ-որ տարօրինակ բան էր կատարվում, պարզ էր: Ես դա դեռևս գիշերը գլխի ընկա, երբ նա թաքուն արցունքները կուլ տվեց: Ուրեմն կանգնել, նայում ենք իրար, մեկ էլ Իրան շիկնելով ասում է.

— Վի՛տյա, այնտեղ, որտեղ գնալու ես, քեզ կարելի՞ է նամակ գրել:

— Ինչո՞ւ ես ուզում ինձ նամակ գրել,— զարմանում եմ ես,— երկու ամսից ետ եմ գալու:

— Ես քեզ անպայման պիտի գրեմ,— համառում է նա,— կարևոր բաներ ունեմ քեզ ասելու:

— Դե՛, հիմա ասա,— ծիծաղում եմ ես,— այսպես նամակից ավելի լավ չէ՞:

— Չէ՛,— գլուխն օրորեց Իրան: Մի պահ ինձ նայեց, հետո շրջվեց ու արագ փախավ: Ճիշտ և ճիշտ այս Կատյայի պես:

Վիտյան լռեց: Երևի ինչ-որ բան էր մտածում: Նա հավանաբար մտածում էր Իրայի մասին, որովհետև այդպես էլ չկարողացավ հասկանալ, թե ինչ տեղի ունեցավ իր հետ դրանից հետո: Բայց Իրայի հայացքը միշտ աչքի առաջ էր: Հիմա էլ է աչքի առաջ: Նա չուզեց Նարեկին ասել, որ այդ հայացքը տեսնում է մինչև անգամ երազում և երդվել է մինչև գյուղ վերադառնալը ոչ մի ուրիշ աղջկա հետ ընկերություն չանել: Դրա համար կոպտեց Կատյային:

— Ախր երբ ես գյուղում էի,— բարձրաձայն խոստովանեց նա,— նրան բանի տեղ չէի դնում: Չնայած ողջ օրը միասին էինք: Ձմռանը, երբ դասերը ուշ էին վերջանում, մութ անտառով մոտ կես ժամ քայլում էինք կողք-կողքի: Բայց ես նրա մասին չէի էլ մտածում:

— Իսկ ինձ թվում է,— մեծավարի նետեց Նարեկը,— որ աղջիկների մասին ընդհանրապես չարժե լուրջ մտածել: Իմ կարծիքով, ժամանակի ավելորդ կորուստ է: Ա՛յ, քիչ առաջ այստեղ էր նրանցից մեկը: Խոսեց-խոսեց, վերջում խռովեց ու փախավ: Չէ, ավելի լավ է, ես իմ մոդելներով զբաղվեմ: Մեր պատանի տեխնիկների կայանի ղեկավարը մայրիկին ասել է, որ եթե ես ժամանակս անիմաստ բաների վրա չծախսեմ, շատ պարապեմ, լուրջ գիտնական կդառնամ: Ես ինքս էլ եմ զգում, որ երբևէ մեծ հայտնագործություններ եմ անելու: Թե ինչ պիտի հայտնագործեմ, դեռ լավ չգիտեմ, բայց ինչ-որ ժամանակ բոլորը կապշեն իմ գյուտերի վրա, դա ես հաստատ եմ ասում:

Հորանի մոտից սուր ու ականջ ծակող ճիչ լսվեց.

— Օգնությո՛ւն, օգնությո՛ւն:

Երկու տղաները վեր ցատկեցին: Կատյայի ձայնը հնչում էր սարսափած, հուսահատ ու տագնապով:

— Օգնեցե՛ք...

Տղաները նայեցին իրար ու բլուրից ցած սուրացին:

(Շարունակելի)



# ԾԱՌԵՐԸ ՎԱՂՈՒՑ ՄԵՐԿ ԵՆ ՈՒ ՏԽՈՒՐ

*ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ*

Ճերմակ բառերով
այս ո՞վ է հեքիաթ պատմում աշխարհին,
ծառերը վաղուց մերկ են ու տխուր,
ծառերը վաղուց չեն մտաբերում
գարնանամուտի նրգերը կանաչ:

Ճյուղերի վրա, ծաղիկների պես,
լույս կայծկլտում են
եղյամ ու փաթիլ,
Թիթեռնիկների թևերի վրա
ձյունը փռվել է
երազի նման:

Ցրտին անձնատուր ծառերն անտառի
տեղ-տեղ վառել են
կանաչ խարույկներ,
եղևնիների փշերը կանաչ
ծակում են քամու
աչքերը ձյունոտ:

Արևի գունատ հայացքի առաջ
սառույցն է փակել
լճերն առվակի,
ընդարձակ դաշտի ամայության մեջ
քամին ձուլում է
Ճերմակ հուշարձան:

# Փ Չ Ա Ն Ը

*ՖԵԼԻՔՍ ՇԱՔԱՐՅԱՆ*

*Նկ. ԷԴԻԿ ՎԱՐԴԱՆՅԱՆԻ*

— Բարև՛, Կիրակո՛ս պապ...— լանջն ի վեր ցեմենտբետոնե աստիճաններով բարձրացած մարդը ամուր սեղմեց ծերունու ձեռքը:

Ահա նա, որին փնտրում էր հին հանքափորը:

— Էս ո՞ւր, Արսե՛ն որդի...— հանդիպման ուրախությունից փայլեց ծերունու դեմքը:

— Հանքախորշ, պա՛պ:

— Ախր, գործ ունեմ քեզ հետ...

— Քայլենք ու խոսենք,— ծերունու թևը մտնելով՝ առաջարկեց հանքի պետը:

Կիրակոս պապը, մի տեսակ ընկճված, կրուցակցին սկսեց պատմել.

— Թոռս՝ Բաբկենը, միջնակարգն ավարտեց ու գնաց քննություններ տալու քո սովորած ինստիտուտում: Երկրաբան է ուզում դառնալ,— պապը ետ դարձավ ու կանչեց հեռվում, ծառի տակ մտամոլոր կանգնած Բաբկենին:— Էն գլխից գլխին քարով էի կարդում, թե շա՛տ կարդա, խաղով մի՛ տարվի... Ասում էր՝ ջրի պես գիտեմ, հարկավոր թեմաները անգիր եմ արել... Եվ դասագրքերում նրանց տեղերը էջերով ասում էր... Հիմա ոտքը քարին դիպավ: Ոնց որ մի՛ քիչ փչան է Բաբկենս...— պապը քթի տակ բարի ժպտաց:

Թոռն անբավարար գնահատական է ստացել հենց առաջին քննությունից՝ ֆիզիկայից: Տուն վերադառնալով դժգոհել է.

— Չկտրվեցի, կտրեցին...

Տնեցիներից ամեն մեկը մի բան ասաց՝ մեկը պաշտպանեց, մեկը բարկացավ: Իսկ պապը, նույն բարի ժպիտով, հարցրեց.

— Հա ասա՛, տեսնեմ ի՞նչ հարցեր ընկան քեզ:

— Առաջինը...— թոռը մի պահ հապաղեց,— պարզ մեքենաներին էր վերաբերվում:

Պապն ավելի մոտ նստած, լսում էր նրան:

— Էդ հե՞չ...— փորձելու համար ասաց նա,— կիմանայիր:

— Գերազանցի ՝պատասխանեցի...— պարծենալու պատրաստ էր թոռը, պարծեցավ,— հիշեցի հին եգիպտացիներին, հին հույներին, հին հայերին,— նրանց օգտագործած պարզ մեքենաները՝ ճախարակը, լծակը, մարտակառքը...

Պապը շարժվեց տեղում, կասկածանքով խոսեց.

— Մարտակառքը կարող է սխալ լինի:

Թոռը դժգոհեց.

— Այդ մեկը որ հանենք՝ «չորսի» պատասխանած հո կլինե՞մ:

— Առա՛ջ անցիր,— ասաց պապը:

— Քննող դասախոսն էլ ասաց՝ առա՛ջ անցիր...— տխրությամբ մտաբերեց Բաբկենը:

— Ուրեմն մի սխալ թույլ ես տվել,— եզրակացրեց պապը:

Թոռը հոգոց քաշեց, ցանկացավ հակաճառել (այդ պահին այնքան էր ուզում, որ տնեցիներից մեկնումեկը պաշտպաներ իրեն), բայց, այնուամենայնիվ, շարունակեց.

— Պա՛պ ջան, երկրորդ հարցը Կոպեռնիկոսին էր վերաբերվում:

— Հետո՞...— պապի ձայնը չոր հնչեց:

— Արքիմեդի, Պասկալի, Ջորդանո Բրունոյի մասին էլ պատմեցի, որ հաստատեմ գերազանցս... Նորից դասախոսի առաջարկով անցա հաջորդ հարցին:



— Ճարտար լեզու ունես,— ասաց պապը,— ապրե՛ս, պիտի գովեմ:

— Երրորդ հարցը ռադիոյին էր վերաբերվում...— թոռը ժպտաց:— Պատմեցի Պոպովի կենսագրությունը, մեկ տարով շփոթեցի ծննդյան թիվը, բայց ճիշտ ասացի ամիսն ու օրը: Ռադիոալիքներից որ խոսք ընկավ, լույսի ալիքների մասին էլ պատմեցի, վերջում էլ նրանց և ձայնի ալիքների տարածման արագությունները համեմատեցի միմյանց հետ: Մի խոսքով,— թոռը տխրեց:



— Մի խոսքով թա՛ր նստեցիր՝ էդ անտեր «2»-ի պոչին...— պապը նրանից պակաս չէր դառնացած:

...Շոգ էր: Բավականին տարածություն Կիրակոս պապը, հանքի պետն ու նրանց ետևից էլ Բաբկենը, լուռ գնացին: Եվ Կիրակոս պապին մտորումներից կտրողը ոչ թե կրակ թափող արևն էր, այլ՝ հանքի պետը, որ գլխից վերցրել էր հանքափորի գլխարկը և սրբում էր ճակատի քրտինքը:

— Դե, մտքինդ ասա՛, Կիրակո՛ս պապ,— խոսեց նա:

— Ասում եմ՝ Բաբկենիս աշխատանքի ընդունես:

— Կարելի է... դիմում պիտի գրի թոռդ:

— Դիմումի ձևը մեզ դպրոցում սովորեցրել են,— անմիջապես վրա բերեց Բաբկենը:

Հանքի պետը ժպտաց.

— Ավելի լավ,— և շարունակեց,— կարճ ժամանակով հանքախորշ եմ մտնում, ի՞նչ եք անելու, գնանք միասին... Կիրակո՛ս պապ, որքա՞ն ժամանակ կլինի, որ մեզ մոտ քեզ չեմ տեսել:

Ծերունին ուշադրության համար ուրախացավ: Հանքի պետը ինչ-որ մեկի պատվիրեց բերել հանքափորի գլխարկներ և ռետինե սապոգներ: Բաբկենը մնաց անտարբեր, կարծես նրանց խոսակցությունը իրեն չէր վերաբերվում: Միացրել էր ձեռքի ռադիոընդունիչն ու երաժշտություն էր լսում. ասես լեռներից, անձրևի տարափի տակ, կայծակների ուղեկցությամբ զահավիժում էր հեղեղը...

Ութսունհինգ տարեկան է Կիրակոս պապը: Արսենը՝ այս հաղթահասակ երկրարանը, մի մատ երեխա էր, որ շա՜տ տարիներ առաջ եկավ աշխատելու հանքում: Դա 42-ին էր, աշնանը: Հպարտանալու իրավունք ունի պապը: Նրա ձեռքի տակ են աշխատանքային առաջին մկրտությունն ստացել հանքաշխարհի այսօրվա սյուները: Ծերունու համար նորություններ շատ կային: Դրանցից մեկը նրան անչափ հետաքրք-

քըրեց. թեթև գնացքներին փոխարինել էին ծանրերը... Եվ մտքում դրեց թոռանն օգնել՝ դառնալու էլեկտրաքարշավար:

Իսկ հանքի պետը զրուցում էր Բաբկենի հետ.

— Հանքախորշ մտա՞ծ կաս, տղա՛ս:

— Այնքա՛ն...— ծոր տվեց նա:

— Իսկ դժվա՞ր էին քննությունները:

— Կտրեցին...— կրկին դառնացավ տղան:— Ախր ռադիոալիքների թեման ջրի պես գիտեի:

Մտան հանքախորշ: Սառն ու խոնավ քամի փչեց: Ռադիոընդունիչը պապանձվեց: Բաբկենն անհանգստացած սկսեց պտտել կոճակը: Նա շփոթվել էր, ուզում էր հասկանալ լռելու պատճառը... գլուխ չէր հանում: Ճանապարհ էին գնալու, նստեցին էլեկտրաքարշ:

Հանքի պետը խորամանկ ժպիտն աչքերում հարցրեց.

— Տեղ որ հասնենք՝ ռադիոընդունիչը կխոսի՞:

— Պիտի որ...— անտրամադիր պատասխանեց տղան:— Ախր սա առաջին դեպքն է... առաջին դեպքն է, որ խափանվում է,— պարծեցավ,— խեր լինի ու խափանվի՞...

— Ռադիոալիքների պատճառով մի տարին կորավ, էլի՞...— ափսոսաց հանքի պետը:

— Կորա՞վ,— ցածրաձայն հառաչեց տղան,— բայց այդ թեման, հորս արև, կարդացել, կարդացել... ջո՞ւր էի արել:

— Ափսոսում եմ,— ասաց հանքի պետը,— գոնե ռադիոընդունիչը չխափանվեր:

— Տեղ որ հասնենք, կաշխատի,— վստահ ասաց տղան:

Հանքի պետին ահազանգել էին ինչ-որ փլուզման մասին, բայց մինչև նրա գալը հանքափորները հասցրել էին մաքրել փլվածքը և բետոնապատել առաստաղը: Գործից թեթևացած, նրանք շրջապատեցին ռադիոընդունիչով տղային: Ուրախացան, որ Կիրակոս պապը իր պես բարձրահասակ թոռ ունի, տխրեցին նրա անհաջողության համար, մխիթարեցին Բաբկենին: Եվ խոսքը նորից եկավ հասավ ռադիոալիքներին ու անսպասելի խափանված ռադիոընդունիչին:

Լուրջ դեմքով մի հանքափոր օրորեց գլուխը.

— Տղա՛ս, կասկածում եմ... կասկածում եմ, որ ռադիոալիքների թեման ջուր լինես արած:

Մեկ ուրիշն, ավելի հեռու կանգնած, խորհուրդ տվեց ռադիոընդունիչի անտենան մտցնել օդամուղ խողովակի մեջ:

Տղան անհամբեր վրա բերեց.

— Որ ի՞նչ անի:

— Որ բռնի ալիքները, ինչպես արծիվը թփի մեջ կծկված խեղճ թռչունին է բռնում,— պատասխանեց լուրջ դեմքով մարդը:— Ախր, ա՛յ որդի, գետնի տակ ենք, հանքաշերտերով շրջապատված, ա՞խր...

Մի քանիսը կուշտ ծիծաղեցին:

Կիրակոս պապը բռնեց թոռան ձեռքը.

— Չէ՛, Բաբկե՛ն ջան, չէ՛... ոնց որ երևում է, ջուրը վարար է եղել, գիտելիքներդ քշե՜լ տարել է...— ձայնը կերկերաց.— Հը՛, երևի պետք չէր էդքան շատ ջուր...— Պապը փորձեց մեղմ կատակով թոռանը դուրս բերել նեղ վիճակից:

## ԱՌԱՋԻՆ ՁՅՈՒՆԸ

*ԱՐՄԵՆ ՇԵԿՈՅԱՆ*

Նայիր դուրս և դու հրաշք կտեսնես,
Փոխվել է արդեն փողոցի գույնը,
Ուր երկա՜ր-երկա՜ր ճամփաներ անցած,
Եկել նստում է առաջին ձյունը:

Ձմեռ պապիկը ամպերին նստած,
Խաղում է ճերմակ իր մորուքի հետ,
Փաթիլներն ուրախ շուրջպար են բռնում,
Գալիս կուտակվում փողոցների մեջ:

Պապիկը գուցե կարոտել է քեզ,
Ուզում է կարգին մի խնջույք բացել,
Դրա համար էլ սփռոցն իր ճերմակ
Ձեր փողոցում ու բակում է գցել:

Ինչ լո՜ւյս է դրսում, անսովոր աղմո՜ւկ,
Էլ այսօր քեզ տուն բերել չի լինում,
Իսկ ձնեմարդը՝ գազարե քթով,
Ժպտում է ուրախ, քեզ աչքով անում:

Մթնում է արդեն, տո՛ւն արի, բալի՛կ,
Քո ձնեմարդն էլ թող մնջի բակում,
Մի մտահոգվի, ձյունը չի փախչի,
Դու քնի՜ր ճերմակ երազի գրկում:

# ԱՍՊԵՏՆ ՈՒ ԶԻՆԱԿԻՐԸ

(Ասք)

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

*Մի ասպետ ելել էր աշխարհի չարիքը վերացնելու, թափառում էր իր զինակրի հետ և արկածներ էր որոնում: Բոլոր վիրավորվածներին պիտի հասներ նա, անարդարություններից տուժածներին սփոփեր պիտի և վրեժխնդիր պիտի լիներ ոտնահարված խեղճերի ու որբերի համար:*

*Թե ինչեր արեց և ինչ արկածներ ունեցավ նա՝ հայտնի է բոլորին:*

*Այսպես, մի դաշտում նրանք բազմաթիվ հողմաղացների հանդիպեցին:*

*— Տեսնո՞ւմ ես այն հսկաները,— ասաց ասպետն իր զինակրին:— Ես պետք է մարտնչեմ նրանց դեմ և ոչնչացնեմ բոլորին:*

*Զինակիրը նայեց և հսկաներ չտեսավ:*

*— Հողմաղացներ են,— ասաց նա:*

*— Հսկաներ են,— ասաց ասպետը:— Մի՞թե չես տեսնում՝ ինչպես են ձեռքերը թափահարում:*

*— Դրանք ոչ թե ձեռքեր են, այլ հողմաղացի թևեր են, որ քամուց պտտվում են:*

*— Իսկույն երևում է, որ ասպետական գործերում հմուտ չես: Ե՛տ քաշվիր ու նայիր, թե ինչպես եմ արյունալի մարտի մեջ մտնում նրանց դեմ: Արդարությունն է պահանջում ջնջել չարիքի արմատը երկրիս երեսից:*



*— Զգուշացե՛ք, տե՛ր իմ,— բացականչեց զինակիրը,— դրանք ամենևին էլ հսկաներ չեն և ոչ մեկին չարիք չեն պատճառում: Ի՞նչ եք անում, տե՛ր իմ, վերադարձե՛ք...*

*Սակայն ասպետը ուշադրություն չդարձնելով զինակրի ճիչերին՝ ասպանդակեց իր նժույգը և սլացավ հողմաղացների վրա, խոցեց իր նիզակով պտտվող հողմաղացի թևը և ինքն էլ թևի հարվածից ջախջախված՝ ցած ընկավ ուշակորույս:*

*Զինակիրը իր ավանակի վրա արագ վրա հասավ, ուշքի բերեց նրան և օգնեց ոտքի ելնելու:*

*— Ես ասացի, չէ՞, որ հողմաղացներ են, տե՛ր իմ,— կշտամբեց նա:— Ինչո՞ւ ինձ չլսեցիք:*

*— Ոչ,— ասաց ասպետը ուշքի գալով,— չար դյութանքը շղարշել է քո աչքերը, հսկաների փոխարեն դու հողմաղացներ ես տեսնում: Սակայն՝ հառա՞ջ,— բացականչեց նա՝ կրկին նժույգի վրա ելնելով,— ամեն հապաղում կործանիչ է մարդկության համար: Բոլոր զրկվածներն ու վարկվածները մեզ են սպասում:*

*Մի տեղ նրանց դեմ ելավ ոչխարի հոտը: Ասպետը քաշեց իր նժույգի սանձը, կանգ առավ:*

*— Տեսնո՞ւմ ես այն փոշու ամպը,— ասաց նա:— Դա մի ահագին զորք է, որ դեպի մեզ է գալիս:*

*Զինակիրը ինչքան աչքերը սրեց, ոչխարի հոտից զատ ոչինչ ջոկել չկարողացավ:*

## Պ Ա Ռ Ա Վ Ը

(անգլիական)

Մի խեղճ պառավ կին վաղ գնաց շուկա,
Որ կաթը ծախի ու շուտով տուն գա:

Շուկան հեռու էր, պառավը հոգնեց
Ու ճամփի եզրին շուռ եկավ քնեց:

Նրան մոտեցավ ուրախ մի շան ձագ,
Հոտոտեց փեշը, քաշեց համարձակ,

Պառավն արթնացավ, նայեց չորս բոլոր,
Սկսեց փնտրել կոշիկները նոր:

Բայց երբ որ տեսավ իր փեշը պատռած՝
«Այս կինը ես չեմ,— պառավը ասաց,—

Եթե ես՝ ես եմ, կերթամ մեր տունը,
Վրաս չի հաչի իմ բարի շունը:

Իսկ եթե ես չեմ, հենց դարպասի մոտ
Ինձ կըզկտի իմ շունը բրդոտ»:

Երբ ուտարքիկ պառավն հասավ տուն,
Դուռն շտապ թակեց ու կանչեց մարդուն,

Շունն այնպես հաչեց, որ պառավն ասաց.
«Իրեմն ես չեմ, մնա՜ քեզ, աստվա՛ծ»:

Փոխադրեց՝ ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆԸ

— Ոչխարի հոտ է,— ասաց նա:

— Մի՞թե դու չես լսում ձիերի խրխինջը, թռչունների ճռվողյունն ու եղջերուների ղողանջը:

— Ես ոչինչ չեմ լսում, տե՛ր իմ, բացի գառան և ոչխարի մայունից:

— Սիրտ մթագնել է քո ուղեղը,— ասաց ասպետը,— և խանգարում է քեզ ճշմարիտը տեսնել ու լսել: Մի կո՛ղմ քաշվիր, խե՛ղճ մարդ, և թո՛ղ ինձ, որ ես միայնակ մարտնեմ, ասպետը նահանջելու իրավունք չունի, թեկուզ բյուր և բյուր լինի թշնամու զորքը:

Այս ասելով նա խթանեց իր նժույգը և սլացավ ոչխարի հոտի վրա:

— Տե՛ր իմ,— ճչաց զինակիրը նրա ետևից,— վերադարձե՛ք, աղաչում եմ ձեզ: Դա ի՞նչ խելագարություն է, այդտեղ ո՛չ զինվոր կա, ո՛չ զրկող, ո՛չ չարագործ և ո՛չ էլ չարամիտ:

Բայց ոչինչ չէր կարող կանգնեցնել խեղճ ու կարոտ մարդկանց միշտ ասպես օգնության հասնող անձնվեր ասպետին:

Երբեմն նա ճանապարհին պատմում էր այն հրաշքների մասին, որ կարող են պատահել թափառող ասպետի կյանքում:

Կյանքը, դժվարությունները և ավելի շատ արկածները՝ այնպես հավասարապես միացրել էին ասպետին ու զինակրին: Վերջինս տարիների հետ ավելի ու ավելի էր հակվում դեպի իր ասպետի խոսքն ու գործը, աշխարհին իր տիրոջ աչքերով սկսեց նայել, և դա ավելի դուրեկան էր նրա համար, քան իր նախկին՝ քարին քար, սպիտակին՝ սպիտակ, սևին սև ասելն էր:

Այսպես նրանք շատ երկար թափառեցին և, իր ասպետին շատ լսելով, զինակիրը սկսեց ուշադրություն դարձնել նրա խոսքերին, և ասպետն էլ իր հերթին զինակրի խոսքերը սկսեց քննել:

Եվ ահա կրկին նրանք հանդիպեցին հողմաղացների:

— Մեր ճակատագիրը դարձյալ մեր դեմ է հանել այս հսկաներին,— ասաց ասպետը քիչ հոգնած:

— Այո՛, տեսնում եմ,— ասաց զինակիրը.— իմ աչքերը կամաց-կամաց բացվում են չար դյութանքից, տեսնում եմ:

— Սակայն,— ասաց ասպետը,— հիշում եմ, որ դու իրավացի դուրս եկար, դրանք իրոք նման են հողմաղացների:

— Ո՛չ, տե՛ր իմ, դրանք հսկաներ են, ասպետի պարտքն է մարտնչել նրանց դեմ, նահանջելը վայել չէ ասպետին՝ ինչպես դուք էիք ասում:

— Այո՛, ի՞նչ արած,— ասաց ասպետը և առանց ոգևորության սլացավ հողմաղացների վրա ու կրկին ջախջախվեց:— Ա՜խ,— ասաց նա վրա հասած զինակրին,— դու իրավացի էիր առաջին անգամ և իրավացի չէիր այս մեկ անգամ: Ինչո՞ւ ես քեզ չլսեցի առաջին դեպքում և ինչո՞ւ լսեցի հիմա: Երկու անգամ նույն հողմաղացները հսկաների տեղ դնելը առավելագույն հիմարություն է: Ահա ես կրկին ջախջախվեցի:

— Ո՛չ,— ասաց զինակիրը,— դրանք իրոք հսկաներ են, ես ինչո՞ւ չհավատացի նախորդ անգամ: Դուք լավ մաքառեցիք նրանց դեմ, տե՛ր իմ: Սակայն հառա՜ջ, բոլոր զրկվածներն ու կարկվածները մեզ են սպասում:

Ամեն քայլափոխի ասպետի հին վերքերին նորերն էին ավելանում, և նրանք այլևս դժվարությամբ էին առաջ շարժվում:

Մի օր էլ նորից նրանց դեմն ելավ ոչխարի հոտը:

— Ոչխարի հոտ,— ասաց ասպետը:

— Ո՛չ,— ասաց զինակիրը,— մեզ միայն թվում է, նրանք ոչխարներ չեն, նրանք զինվորներ են, որ գալիս են մեզ վրա: Ես լսում եմ թմբուկի զարկերը:

— Մի՞թե:

— Այո՛, ես լսում եմ ձիերի խրխինջ և զենքերի շառաչ: Իմ աչքերի հետ ականջներս էլ են բացվել:

— Ես հոգնել եմ դրանից: Արդեն քանի դար է՝ թափառում ենք աշխարհում: Բայց բան չփոխեցինք աշխարհում: Դու իրավացի էիր՝ մարդիկ մեզ կատարյալ խենթի տեղ են դնում:

— Բայց դուք ասում էիք, որ խենթերն են մեզ խենթի տեղ դնում, և դուք իրավացի էիք: Ես արդեն հասկանում եմ, որ այդպես է:

— Այնուամենայնիվ ես հոգնել եմ այս անիծված ու քնձռոտ ձիով թափառելուց:

— Այդպես մի՛ ասեք, տե՛ր իմ, դա մի հրաշալի նժույգ է:

— Թող քո ասածը լինի, խե՜ղճ մարդ: Բայց ես համաձայն եմ այս սքանչելի նժույգը փոխել քո ավանակի հետ: Որովհետև ես հաճախակի եմ ցած գլորվում ձիուց, իսկ ավանակից ընկնելու վտանգը գոնե քիչ կլինի:

— Լավ,— ասաց զինակիրը,— ես համաձայն եմ փոխել իմ ավանակը ձեր նժույգի հետ: Բայց իմացեք, տե՛ր իմ, ժողովուրդն ասում է, թե էշից ընկնելը վատ է, քան ձիուց ընկնելը:

Ձիու վրա բարձրանալով, զինակիրը բացականչեց.

— Ինչ լա՜վ է ձիու վրա, իմ դեմ հեռաստանները բացվեցին: Ահա ես տեսնում եմ մշուշոտ մի քաղաք հեռվում: Այնտեղ ապրում է աշխարհի ամենադժբախտ դշխուհին, որովհետև նա գեղեցիկ է և բանտարկված: Մենք պետք է օգնության հասնենք նրան, այդ է մեզնից պահանջում թափառող ասպետի կոչումը:

— Ինչքա՜ն բան ինձ սովորեցրիր, իսկ ինքդ մոռացար,— ասաց ասպետը՝ ավանակի վրա տեղավորվելով:— Ի՞նչ քաղաք, ի՞նչ բան, խղճուկ մի ավան է, կամ դրա նման մի բան:

— Ո՛չ, ազնվագո՛ւյն ասպետ, այդ դու ինձ սովորեցրիր և ինքդ մոռացար: Դա հենց այն հոյակերտ քաղաքն է, որտեղ տարիներ ի վեր իր ազատարարին է սպասում ազնվագույն, չքնաղագույն, ամենանվիրական սրտի տեր դշխուհին: Մեր կյանքի գնով թեկուզ՝ մենք պարտավոր ենք ազատագրել նրան: Դու չէի՞ր ասում, թե ազատությունը մեծագույն բարիքն է մարդու համար, հանուն նրա պետք է և անհրաժեշտ է, որ մարդ վտանգի ենթարկի իր կյանքը:

— Նախկինում դուք ինձ կառարկեիք, ասելով, որ դա ցնորք է ու անիրագործելի: Ի՞նչ պատահեց ձեզ:

— Իմ աչքերը բացվել են, մեր համատեղ կյանքն իզուր չի անցել:

— Աչքերը բացվե՞լ են... ի՞նչ դշխուհի, ի՞նչ չքնաղագույն: Սուտ է ամեն ինչ ու ցնորք:

— Ո՛չ, իրական է ու պարզ՝ ասում է իմ սիրտը:

— Սուտ է ու ցնորք՝ ասում է իմ ջախջախված մարմինը:

— Ո՛չ, ո՛չ, նախկինում ես տեսնում էի միայն գռեհիկ իրականությունը, այժմ ես գնահատում եմ քո խոսքերի իմաստը, իմ աչքերը շղարշով էր պատած: Ընկել է այդ շղարշը:

— Օ՛,— ասաց ասպետը,— զգուշացե՛ք դրանից, դուք կկորցնեք իրականության զգացումը, մի՛ կտրվեք հողից, զգուշացե՛ք այդ խելագարությունից... Ես, փառք աստծո, ամեն ինչ տեսնում և զգում եմ այնքան իրական, որ որոշել եմ այլևս հանգիստ տալ իմ բազմաչարչար ոսկորներին: Ես այլևս նախկին ցնորվածը չեմ, իմ աչքերից ընկել է շղարշը: Աստծո ողորմածությամբ և ավելի շատ ձեր օգնությամբ լուսավորվեց իմ ուղեղը և ես դատապարտում եմ իմ բոլոր արարքները:

— Զգուշացի՛ր դրանից,— ասաց զինակիրը ի պատասխան,— այդպես դու հետզհետե կիջնես իրականության տիղմի մեջ, քո աչքերը կհրաժարվեն վեհն ու գեղեցիկը տեսնել, դու կտեսնես միայն անարգը, առօրեականը, գորշը: Սակայն բավական է խոսենք: Հառա՜ջ... Այս աշխարհի բոլոր զրկվածները, խեղճերը, որբերը և թշվառները մեզ են սպասում: Հառա՜ջ, հառա՜ջ և ոչ մի՛ քայլ ետ...

Այս խոսքերի հետ նա խթանեց նժույգը և սլացավ դեպի մշուշի մեջ կորած քաղաքը: Իբր՝ քաղաքը:

Իսկ ասպետը, ավանակի վրա նստած, դժկամորեն ու ակամա հետևեց նրան, կատարելապես համոզված, որ նրա արածը խելագարություն է:

# ՎԱՐՊԵՏ ԹՌՉՈՒՆԸ

Վ. ԲԵՐԵՍՏՈՎ

Նկ. ԿԱՄՈ ԳՅԱՆՋՅԱՆԻ



ենք անապատից գնում էինք Կունյա-Ուրգենչ քաղաքը: Չորս կողմը ավազուտ էր: Հանկարծ առջևում մի բան երևաց, որը չգիտես փարո՞ս, թե՞ ֆաբրիկայի ծխնելույզ էր:

— Դա ի՞նչ է,— հարցրի թուրքմեն վարորդին:

— Հինավուրց աշտարակ է Կունյա-Ուրգենչում,— պատասխանեց նա:

Ես, իհարկե, ուրախացա: Ուրեմն շուտով դուրս կգանք շիկացած ավազների ծովից, շունչ կքաշենք ծառերի ստվերում, կլսենք առվի կարկաչ:

Բայց ի՞նչ. գնում ենք, գնում, իսկ աշտարակը ոչ միայն չի մոտենում, այլև ընդհակառակը՝ կարծես ավելի է հեռանում:

Եվ դա առիթ եղավ, որպեսզի վարորդը պատմեր այս պատմությունը:

Հնում Կունյա-Ուրգենչը եղել է Խորեզմի հարուստ ու ծաղկուն տերության մայրաքաղաքը: Խորեզմը բոլոր կողմերից շրջապատված էր ավազուտներով, որտեղից խուժում-գալիս էին քոչվոր ասպատակները, թալանում էին երկիրը և ոչ մի հնար չկար իմանալու, թե երբ և որտեղից կգան նրանք:

Եվ ահա մի վարպետ Խորեզմի շահին առաջարկում է կառուցել մի բարձր աշտարակ, այնքան բարձր, որ նրա վրայից երևան երկրի սահմանները: Այնուհետև ոչ մի թշնամի չի կարողանա աննկատ ներս թափանցել:

Շահը հավաքում է իր իմաստուններին ու խորհուրդ հարցնում: Իմաստունները մտածում են ու ասում.

— Եթե աշտարակից երևան երկրի բոլոր ծայրերը, ուրեմն աշտարակն էլ կերևա բոլոր ծայրերից: Թշնամու գործը կհեշտանա, աշտարակը ճանապարհ ցույց կտա նրան: Պարզ է, որ վարպետը մեր պետության դավաճանն է: Պետք է գլխատել նրան, իսկ աշտարակաշինությունից ձեռք քաշել:

Շահը չի լսում իմաստուններին: Հրամայում է կառուցել աշտարակը:

Այնուհետև պատահում է մի անսպասելի բան. աշտարակը դեռևս չավարտված՝ թշնամու ասպատակությունները վերջանում են:

Ուրեմն իմաստունները ճիշտ են. աշտարակն իսկապես երևում է բոլոր կողմերից: Սակայն թշնամիները տեսնելով այն, կարծում են, թե Խորեզմը բոլորովին մոտիկ է, ավազուտում թողնում են դանդաղաքայլ ուղտերին՝ ջրով և ուտելիքով բարձված, իսկ իրենք արագընթաց նժույգներով սլանում են դեպի մոտիկ թվացող աշտարակը, և բոլորը ծարավից ու քաղցից մեռնում են անապատում:

Վերջապես մի խան՝ քոչվորների առաջնորդներից մեկը, իր նախորդների կորուստը վերլուծելով, կարողանում է բացել խորեզմցիների գաղտնիքը: Նա որոշում է վրեժխնդիր լինել: Ձիավորները թաքնվելով ավազաթմբերի ետևում, գիշերները խուսափելով խարույկ վառելուց, խանն իր հորդայով աննկատելիորեն գալիս հասնում է աշտարակին:

Ծերունի վարպետը դեռ աշխատելիս է լինում աշտարակի գագաթին:

— Ցա՛ծ եկ, ծո՛ւն,— կատաղած գոչում է խանը:— Ես կթռցնեմ քո դատարկ գլուխը:

— Դատարկ չէ իմ գլուխը, խա՛ն, այլ լեցուն գիտելիքներով,— հանդարտ ասում է վարպետը:— Դու պատե՞ր ուղարկիր թուղթ, սոսինձ ու եղեգն: Եղեգնից գրիչներ կշինեմ, թղթից՝ երկար փաթեթներ, և գրի կառնեմ այն բոլորը, ինչ՞որ ես գիտեմ: Այն ժամանակ իմ գլուխն իսկապես որ կդատարկվի և դու, կտրելով այն, ոչինչ չես կորցնի, իմ գիտելիքները քեզ կմնան:

Խանը համաձայնում է: Վարպետը վերևից պարան է կախում և ցանկացածն ստանում: Նա թուղթն ու եղեգնը իրար սոսնձելով, շինում է մեծ-մեծ թևեր ու դրանցով թռչում գնում:

Խանը, գլուխը կորցրած, ասում է իր [illegible].

— Պատմության մեջ գրի՛ առ այն բոլորը, ինչ տեղի ունեցավ, որպեսզի մեր թոռներն իմանան, թե



ԳԱՅԱՆԵ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

## ԵՍ ՆԿԱՐՈՒՄ ԵՄ

Ես նկարում եմ
Ծաղիկներ գարնան,
Իսկ դրսում ձյուն է,
Իսկ դրսում ձյուն է...
Ես նկարում եմ
Արևներ ամռան,
Եվ ինձ թվում է
Ծաղկաթերթեր են
Թափվում երկնքից,
Եվ այնպես տաք է,
Եվ այնպես տաք է:




*ինչ նողկալի խաբեության, ինչպիսի վայրի ուխտադրժության են ընդունակ այդ խորեսզմցիները:*

*Իսկ տարեգիրը պատասխանում է.*

*— Վարպետն, իհարկե, խաբել է քեզ: Նա ոչ թե փաթեթ է շինել, այլ՝ թևեր, ու թռել գնացել է: Բայց դա արդեն սովորական խաբեություն չէ, այլ բարձր բանականության նշան: Եվ մեր թոռների հիացմունքը կշարժի նա, այդ մարդը, որը սովորել է թռչել:*

*— Ոչինչ մի՛ գրի պատմության մեջ,— փրփրում է խանը,— թող ոչ ոք չիմանա, թե մեկ ինչպես են ձեռ առել:*

*Անցել են դարեր: Մարդիկ մոռացության են տվել ահարկու խանի անունը, շահի և նրա երկչոտ իմաստունների անունները: Բայց հիմա ամեն երեխա գիտի, թե ով է եղել վարպետը. նա Ուստա Ղուշ է կոչվել, այսինքն՝ Վարպետ Թռչուն:*

Թարգմ. ՀԱՄԻ ՀԱՐՅԱՆԻ



# ՈՒՄ ԱՆՈՒՆՆ Է ԿՐՈՒՄ ԴՐՈՒԺԻՆԱՆ

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

Իտալական կառավարական թերթում 1957 թ. հունիսի 9-ին մի ուշագրավ փաստաթուղթ հրապարակվեց: Դա մի դեկրետ էր, ուր ասվում էր, թե ազատության քաջարի մարտիկ Կոլեսյանը բոլոր մարտական գործողությունների ժամանակ միշտ գտնվել է առաջին շարքերում, շարունակ օրինակ է ծառայել պայքարի իր ընկերների համար: Մարտերից մեկի ժամանակ Գեորգի Կոլեսյանը հերոսաբար կռվեց մարտի դաշտում, թշնամու գնդացիրը գրավելու նպատակով նետվելով դրա վրա: Դա տեղի ունեցավ Գերֆալկո-Լե Կատլինեի շրջանում 1944 թ. հունիսի 25-ին:

Դեկրետը սովետական քաղաքացի Գեորգի Կոլեսյանին ետմահու ռազմական արիության համար բրոնզե մեդալով պարգևատրելու մասին էր:

Նա ծնվել էր 1917 թ. Նոր Բայազետ (Կամո) քաղաքում: 1938 թ. ավարտել էր տեխնիկումը և պատրաստվում էր նվիրվելու մանկավարժական աշխատանքի: Բանաստեղծություններ էր գրում, երազում էր ապագայում գրականագետ դառնալ: Մեկ ամիս միայն աշխատեց, երբ սովետա-ֆիննական կռիվներն ընդհատեցին խաղաղությունը: Գևորգ Քոլոյանը շատերի հետ մեկնեց ճակատ և վիրավորվեց այնտեղ: Երբ [illegible] [illegible] հոսպիտալից, վերցավել էր պատանդ[illegible]: Նա վերա-

դարձավ տուն՝ Նոր Բայազետ և դարձյալ անցավ խաղաղ աշխատանքի: 1941 թ. հունիսին, երբ սկսվեց Հայրենական մեծ պատերազմը, Գևորգ Քոլոյանը նորից զենք առավ ձեռքը, մեկնեց ռազմաճակատ:

«Սիրելի՛ մայրիկ, հիմա այնպիսի պահ է, որ ամեն մի սովետական քաղաքացու պարտքն է պաշտպանել հայրենիքը, մեր մայրերի, կանանց, քույրերի պատիվն ու կյանքը: Եթե ինձ չկանչեին բանակ, ես ինքս կասեի՝ գնում եմ, գնում եմ պաշտպանելու իմ հայրենիքը»:




Սա Գևորգ Քոլոյանի առաջին նամակն էր: Իսկ վերջինը ստացվեց մեկ տարի անց, 1942 թ. հունիսին: Դրանից հետո նա Ղրիմում ընկավ շրջապատման մեջ և գերի տարվեց Իտալիա՝ համակենտրոնացման ճամբար: Մի խումբ ընկերների հետ կազմակերպելով և իրագործելով փախուստը համակենտրոնացման ճամբարից, Գևորգ Քոլոյանը միացավ պարտիզաններին, որոնք գործում էին Իտալիայի հյուսիսում:

Պարտիզանական ջոկատի հրամանատար Ջորջիոն Գևորգին շատ էր սիրում: Գևորգը կատարում էր կարևոր հանձնարարությունները, համարձակ էր և ուշիմ:

Այն օրից, ինչ փախել էին համակենտրոնացման ճամբարից և միացել պարտիզաններին, շատ բան էր փոխվել: Հիտլերականների գերազանց ուժերը արագորեն նահանջում էին փոքրաթիվ պարտիզանական ուժերի եռանդուն հարվածներից և կենտրոնանում Իտալիայի հարավում: Պատերազմը մոտենում էր ավարտին:

Մի օր հրամանատար Ջորջիոն կանչեց Գևորգին և մի քանի այլ պարտիզանների: Նրա մոտ եկել էր իտալական մի գյուղացի և հայտնել, որ մի խումբ գերմանացիներ ցանկանում են հանձնվել: Ջորջիոն պատվիրեց Գևորգին մեկնել և բերել գերյալներին: Երբ հասան որոշված վայրը, թփերի միջից անսպասելի ճարճատեց հակառակորդի գնդացիրը և պարտիզաններից երկուսն ընկան:

— Պառկե՛ք, տղանե՛ր,— ձայնեց Գևորգը,— մեկ խաբել են...

Սկսվեց անհավասար, կարճատև, կատաղի մարտ: Դրությունը դառնում էր հուսահատական, հարկավոր էր ոչնչացնել հակառակորդի գնդացիրը: Եվ Գևորգը սողաց առաջ, թաքնվելով ծառերի, քարերի ետևում:

Ամեն ինչ կատարվեց անսպասելի: Թփերի արանքից դուրս ցցվեց գնդացրի փողը: Մտածելու ժամանակ չկար: Գևորգը նետվեց առաջ, կրծքով ծածկավ գնդացրի փողին և գրկեց այն...

Ամեն տարի հունիսի 25-ին Կատլինեի աշխատավոր ժողովուրդը թարմ ծաղիկներով է ծածկում անմահ հերոսի գերեզմանը: Իտալիան չի մոռանում նրան:

Երևանի № 31 դպրոցի պիոներական դրուժինան կոչված է Գևորգ Քոլոյանի անվամբ: Պիոներներն աշխույժ նամակագրություն ունեն հերոսի հարազատների հետ: Շեֆ կորամասի մարտիկների օգնությամբ դպրոցում ստեղծվել և գործում է «Կարմիր հետախույզների ակումբ», որը Լենինյան շրջանի լավագույն ակումբներից է:

*ՎԱՀԱՆ ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆ*

# ԻՆԸ ՏԱՐՈՒՄ

ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



Ճանապարհորդությունից վերադարձած Ֆարադեյը այլևս նման չէր խանութում աշխատող Մայքլին: Նա աշխարհի գրեթե բոլոր մեծ ֆիզիկոսների հետ սեղան էր նստել, մասնակցել նրանց զրույցներին, ականատես և ունկնդիր եղել նրանց վեճերին:

Ինքնուրույն և անսովոր մտածողությունը հանգիստ չէր տալիս նրան. պետք էր ինչ-որ բան անել, նոր գյուտ, հայտնագործություն...

Տարիներն անցնում էին...

Եվ ահա ներկայացավ առիթը. Ֆլորենցիայի դքսուհին, որն արդեն ծանոթ էր Դևիին, ծանրոց էր ուղարկել, որի մեջ գտնվող հանքանյութը խնդրել էր ենթարկել մանրազնին հետազոտության: Դքսուհուն հետաքրքրում էր հանքանյութի կազմությունը: Դևին, որն զբաղված էր հանքափորի հայտնի լամպի կառուցվածքի կատարելագործման հարցերով, խնդրեց Ֆարադեյին կատարել դքսուհու պահանջը:

Ֆարադեյը լծվեց գործի և մի քանի օր անց հանքանյութի անալիզը ներկայացրեց Դևիին: Վերջինս զարմացավ. Ֆարադեյի ստացած տվյալներն այնքան հետաքրքիր էին, որ պրոֆեսորն առանց էական շտկումների դրանք ուղարկեց ինչ-որ գիտական ամսագրի խմբագրություն: Դա Ֆարադեյի առաջին հոդվածն էր: Առաջին գիտական հոդվածը, ուր արդեն երևում էր Ֆարադեյ-հետազոտողի դեմքը:

Խորություն, նախանձելի համառություն, ամբողջություն, նպատակին հասնելու կիրք և եռանդ. ահա Ֆարադեյի այն հատկությունները, որոնք երևացին հենց առաջին հոդվածում:

1820-ից փոխվեց Ֆարադեյի ուսումնասիրությունների բնագավառը: Օգոստոսյան մի առավոտ Դևիի հասցեով ստացվեց Էրստեդի փորձերն ամփոփող մի գրքույկ: Երկու օր անց Դևին և Ֆարադեյը կրկնեցին Էրստեդի փորձերը: Կրկնեցին և համոզվեցին, որ Էրստեդը ճիշտ է. հաղորդիչով հոսանք անցնելիս խոտորվեց ոչ հեռու դրված կողմնացույցի սլաքը: Դեռ ավելին. նրանք համոզվեցին, որ հաղորդիչով անցնող հոսանքը կարող է ազդել նաև երկաթի կամ պողպատի խարտվածքի վրա: Իհարկե, հեշտ էր եզրակացնել, որ այդ խարտվածքի յուրաքանչյուր հատիկ առանձին վերցրած փոքրիկ սլաք է: Էրստեդի փորձերը նրանց հեռու էին տանում, նոր հայտնագործությունների շեմին էին կարծես, երբ Անգլիա հասավ Ամպերի փորձերի և դրանցից բխող տեսության լուրը:

Սկիզբը՝ № 11-ում.

Աշունն անցավ, եկավ ձմեռը, վրա հասավ նոր տարին՝ 1821 թվականը: Դևին աստիճանաբար հրաժարվեց էլեկտրականության հետ կապված խնդիրներից, իսկ Ֆարադեյը անհողդողդ մնաց: Բայց ի՞նչ. Ամպերը շատ առաջ էր անցել. թվում էր սպառել էր էլեկտրամագնիսականության բոլոր հանելուկների պարզաբանումը:

Եկավ ամառը. Ֆարադեյի գործընկերները գնացին հանգստի, Դևին նույնպես հեռացավ Լոնդոնից: Շոգերը չազդեցին Ֆարադեյի վրա, Լոնդոնյան գոլորշին ամենևին էլ չանհանգստացրեց նրան. էլեկտրամագնիսական երևույթների հետ կապված պրոբլեմները գամել էին նրան լաբորատորիայի փորձասեղանին:

Այդ օրերին «Փիլիսոփայական տարեգիրք» գիտական ամսագրի խմբագիր դոկտոր Ֆիլիպսը առաջարկեց նրան ընդարձակ ակնարկ գրել էլեկտրամագնիսականության վերաբերյալ: Առաջարկությունը ուղղակի ցնցեց Ֆարադեյին. նման մի ամսագրում հոդված տպագրելու համար առնվազն պետք էր Դևիի հեղինակությունն ունենալ: Ի՞նչ կարող ես անել. առաջարկել էին ոչ թե Դևիին, այլ իրեն՝ Ֆարադեյին:

Լծվեց գործի, սակայն նա այն ֆիզիկոսներից չէր, որ սահմանափակվեր այս ասպարեզում արդեն ձեռք բերված նվաճումների շարադրանքով. նա պետք է նախ ինքը համոզվեր արդեն կատարված հայտնագործությունների իրավացիության մեջ և ապա ներդներ նաև իրենը՝ սեփականը: Այո, սեփականը:

Բայց ինչի՞ց սկսել: Ահա այն հարցը, որ առաջինը ծառացավ նրա դեմ: Նա որոշեց սկսել հենց թեկուզ այն փորձով, որի մասին երկու ամիս առաջ խոսել էին Դևին և Վոլաստոնը:

Իսկ ո՞րն էր այդ փորձը: Դևիին թվում էր, թե մագնիսի ստեղծած մագնիսական դաշտում տեղավորված հոսանքակիր հաղորդիչը պետք է պտտվեր իր առանցքի շուրջը:

Այդ գաղափարը, իհարկե, Դևիինը կամ Վոլաստոնինը չէր. դրա մասին ասել էր նաև Ամպերը: Բայց փորձով ստուգել չէր հաջողվել և ոչ մեկին:

Երբ փորձի համար անհրաժեշտ սարքը պատրաստ էր, ներս մտավ Ջորջ Բեռնարը՝ Ֆարադեյի կնոջ՝ Սառա Բեռնարի եղբայրը: Եվ առաջինը նրան բախտ վիճակվեց ներկա գտնվելու մագնիսական դաշտում հոսանքակիր հաղորդալարի պտտման երևույթին:

Ջորջ Բեռնարը պատմում է, որ նա Մայքլին այդքան հուզված չի տեսել ոչ մի անգամ: Դա հասկանալի է. բնության երկու ուժերի (էլեկտրական և մագնիսական) փոխազդեցությամբ տեղի ունեցող հավասարաչափ պտտական շարժումը առաջինն էր իրականացնում ինքը:

Արդյոք հիմա մենք հիշո՞ւմ ենք, որ էլեկտրաշարժիչներով շարժվող բոլոր մեքենաների հիմքում ընկած է Ֆարադեյի այդ արտաքուստ պարզունակ փորձը:

Իսկ, կատարվել էր մեծ հայտնագործություն: Վերոհիշյալ ամսագիրը ստացավ իր պատվիրած հոդվածը: Ստացավ և տպագրեց: Այս ամենը կատարվեց այնքան արագ, որ երբ Դեվին վերադարձավ արձակուրդից, իր սեղանի վրա տեսավ ամսագրի համապատասխան համարը, ուր տպագրված ընդարձակ հոդվածի տակ ստորագրված էր՝ Մայքլ Ֆարադեյ: Հոդվածում ոչինչ չէր ասված Դեվիի և Վոլաստոնի մասին: Դա զարմանալի էր նրանց համար, քանի որ Ֆարադեյը նրանցից էր լսել փորձի գաղափարը:

Թագավորական ինստիտուտում սկսվեց իրարանցումը: Կասկածի տակ առան ոչ միայն այդ փորձի իրականացման համար Ֆարադեյին տրվող նախապատվությունը, այլ նաև նրա բարեխղճությունը. «Ինչպե՞ս կարելի է ուրիշների մտահղացումներով արված փորձերից ստացված տվյալները սեփականացնել, էլ ուր մնաց գիտնականի բծախնդրությունը»:

Ֆարադեյը առաջինը դիմեց Վոլաստոնին և բացատրեց ստեղծված իրավիճակը, թե ինչու նրա անունը չի հիշատակվել հոդվածում:

Վոլաստոնը ասպետորեն հրաժարվեց իր պահանջից. «Երիտասարդ Ֆարադեյը դեռ վաստակ չունի և ինչ է նրա արածը՝ մի պարզունակ փորձ»: Երևի Վոլաստոնը չզգաց Ֆարադեյի փորձի էությունը, նրան թվաց, թե Ֆարադեյի ստեղծածը ընդամենը շարժվող մի խաղալիք է: Իսկ այն ոչ թե խաղալիք էր, այլ առաջին էլեկտրաշարժիչը: Եթե գիտենար Վոլաստոնը, երևի չհրաժարվեր իր առարկություններից:

Դժբախտաբար նույնը չի կարելի ասել Դեվիի մասին. նրա վերաբերմունքը փոխվեց Ֆարադեյի նկատմամբ. դարձավ ավելի սառը: Չի կարելի ասել, թե Դեվին թշնամացավ Ֆարադեյին և չի կարելի ասել, թե բարեկամ մնաց. նրա վերաբերմունքը զգացումների մի կծիկ էր, որի մեջ կար և՛ նախանձ, և՛ հպարտություն: Նախանձ, որ իր աշակերտը նոր դարագլուխ բացեց ֆիզիկայի մեջ, հպարտություն, որ նա, վերջիվերջո, իր աշակերտն է:

Դրությունն ավելի բարդացավ, երբ Դեվին ընտրվեց Լոնդոնի թագավորական ընկերության պրեզիդենտ: Ուսուցչի և աշակերտի միջև ծայր առավ ներքին հակասություն, որի մի ծայրը գիտության բարձունքում կանգնած Դեվիի ձեռքում էր, մյուս ծայրը՝ դեպի այդ բարձունքը գրոհող Ֆարադեյի ձեռքում: Բոլոր դեպքերում Դեվին անուղղակիորեն կասեցնում էր Ֆարադեյի առաջընթացը: Դա պարզորոշ դրսևորվեց, երբ Ֆարադեյին առաջադրեցին թագավորական ընկերության անդամ:

Դեվին բացահայտ դեմ էր: Բայց ընկերության անդամին ընտրում էին և ոչ թե նշանակում: Այստեղ արդեն Դեվին ոչինչ անել չկարողացավ, երբ բաց արին քվեատուփը, կար ընդամենը մեկ «սև գնդիկ», մնացածները սպիտակ էին: Ենթադրեցին, որ դեմ է եղել միայն Դեվին:

1824-ին, լաբորատորիա ընդունվելուց տասնմեկ տարի անց, Ֆարադեյը դարձավ Լոնդոնի թագավորական ընկերության անդամ (այսինքն՝ ակադեմիկոս):

Դեվիի աստղը գնալով խամրում էր, նա իր վերջին փորձերը կատարեց 1826-ին և ոչինչ դուրս չեկավ: Երևի գիտական աշխատանքով զբաղվելու ժամանակն անցել էր: Նա ծանր ապրեց իր ստեղծագործական ճգնաժամը: Շուտով հեռացավ ոչ միայն ինստիտուտից, այլև Լոնդոնից:

Նա մի շարք մեծ հայտնագործությունների հեղինակ է. բայց եթե հավատանք, իր ասելով նրա ամենամեծ հայտնագործությունը եղել է Ֆարադեյը:

Ափսոս, Դեվին երկար չապրեց, որ ականատես լիներ իր աշակերտի գալիք մեծ հայտնագործություններին:

Աչքի առաջ ունենալով բնության երկու ուժերի (էլեկտրական և մագնիսական) փոխազդեցության երևույթը, Ֆարադեյը փորձում էր ինչ-որ ճանապարհով ցույց տալ, որ եթե էլեկտրականությամբ Ամպերը ստացավ մագնիս, ապա մագնիսի օգնությամբ կարելի է ստանալ էլեկտրականություն:

Հարցադրումը պարզ էր ու տրամաբանական: Իր նպատակին հասնելու համար Ֆարադեյը կատարեց բազմաթիվ փորձեր: Պահպանվել են այդ բոլոր փորձերի ընթացքները նկարագրող գրառումները: Այդ ուղղությամբ կատարված վերջին փորձը հանդես է գալիս 16041 համարի տակ: 16041 փորձ. ինչպիսի՜ համբերություն, ինչպիսի՜ կամք ու համառություն:

Եվ ահա Էրստեդի հայտնի փորձերից տասնմեկ տարի անց, 1831 թվի հոկտեմբերի 17-ին Ֆարադեյը հասավ իր նպատակին:

Նրա փորձը կրկնելը առանձին բարդություն չի ներկայացնում նույնիսկ ֆիզիկայից հեռու գտնվող մարդու համար. սովորական կոճ, որի փաթույթների ծայրերը միացրել էր գալվանաչափին, ահա նրա կազմած շղթան: Կոճի երկաթյա միջուկը շարժելիս



նա տեսավ, որ գալվանաչափի սլաքը շեղվեց: Իսկ դա նշանակում է, որ շղթայում առաջացավ հոսանք: Ֆարադեյին թվաց, թե սլաքի շեղման պատճառը մագնիսացած երկաթե միջուկի ձգողությունն է և ոչ թե առաջացած հոսանքը: Այդ պատճառով գալվանաչափը հեռացրեց կոճից, տեղափոխեց հարևան սենյակը և ինչ. կրկին ականատես եղավ նույն արդյունքին:

Պարզվում է, որ նույն փորձը կատարել էր նաև Ամպերը և սլաքի խուսափման «մեղքը» բարդելով մագնիսացած երկաթե միջուկի վրա», նա էլ գալվանաչափը տեղափոխել էր հարևան սենյակում: Այնինքն՝ ամեն ինչ արել էր այնպես, ինչպես Ֆարադեյը:

Իսկ ինչո՞ւմն է բանը. ինչո՞ւ Ամպերը չդարձավ այդ հայտնագործության հեղինակը. չէ՞ որ նա ավելի շուտ էր զբաղվել այդ փորձով:

Բանն այն է, որ Ամպերը մի քանի անգամ միջուկը շարժելուց հետո ստիպված էր մտնել հարևան սենյակը՝ գալվանաչափի սլաքի շեղումը տեսնելու: Իսկ քանի որ հոսանք ծագում էր միայն միջուկի շարժման պահին, ապա պարզ էր, որ նա սլաքի շարժում չէր կարող նկատել:

Իսկ ի՞նչ արեց Ֆարադեյը: Մի՞թե որևէ նոր բան ավելացրեց Ամպերի կատարածին: Ամենևին. պարզապես նա փորձն անցկացրեց ասիստենտի հետ միասին: Վերջինիս պարտականությունն էր՝ անընդհատ շարժել միջուկը, իսկ Ֆարադեյինը՝ հետևել սլաքին:

Ահա թե ինչ հայտնագործությունից զրկվեց Ամպերին նրա մանկական միամտությունը:

Ֆարադեյը անմիջապես եզրակացրեց, որ մագնիսը կարելի է թողնել անշարժ և նրա նկատմամբ շարժել կոճը և նորից շղթայում կհայտնվի հոսանք: Պարզ էր նաև այն, որ կոճի փոխարեն կարելի է վերցնել պարույրը կամ պարզապես լարը:

Ուրեմն, մագնիսի ստեղծած մագնիսական դաշտում փակ կոնտուրի (լարի) պտտման դեպքում նրանում առաջ է գալիս էլեկտրական հոսանք: Ահա և հոսանքի մի նոր աղբյուր կամ, նույնն է, էլեկտրագեներատոր:

Ինը տարվա ընթացքում երկու հայտնագործություն, ընդ որում երկուսն էլ հեղաշրջող՝ էլեկտրաշարժիչ և էլեկտրագեներատոր:

Տարիներ շարունակ Ֆարադեյը նորանոր տարբերակներ էր փնտրում կոճի և միջուկի, միջուկի և գալարի փոխհարաբերություններում: Ասում են, որ այդ տարիների ընթացքում Ֆարադեյի գրպաններում միշտ կարելի էր գտնել հաղորդալար, մագնիս, փոքրիկ կոճ և պատահի առիթով կարելի էր տեսնել, թե նա ինչ հաճույքով էր զբաղվում այդ իրերի հետ, մերթ մագնիսն էր մոտեցնում հաղորդալարին, մերթ կոճը մագնիսին և այդպես անվերջ: Նման հետաքրքրություն հատուկ է միայն երեխաներին և այն էլ այն երեխաներին, որոնք ամեն ինչի վրա զարմանում են: Ֆարադեյը մինչև խոր ծերություն մնաց զարմացող երեխա: Բնության երևույթներով զարմացող Ֆարադեյին հենց բնությունն էլ երախտահատույց եղավ. բացեց իր գաղտնիքները:

Թեև Ֆարադեյի նկատմամբ երախտապարտ չգտնվեցին Լոնդոնի թագավորական ինստիտուտում, նրա լաբորատորիան մինչև վերջ էլ մնաց անմխիթար վիճակում: Այնտեղ տեղի ունեցող պայթյունները շատ քայքայեցին նրա առողջությունը: Վերջին պայթյուններից մեկի ժամանակ հրաշքով փրկվեց նրա տեսողությունը: «Անցյալ շաբաթ տեղի ունեցած պայթյունը ինձ համարյա զրկեց տեսողությունից: Քիմիական փորձերի համար տեղադրված խողովակներից մեկը ջարդուփշուր եղավ և բեկորները դեմուդեմ թռան ինչպես հրացանից կրակված փամփուշտները: Մի պահ ինձ թվաց, թե ես կուրացա...»

Երկար ժամանակ նա զբաղվեց էլեկտրամագնիսական երևույթների ուսումնասիրությամբ: Այդ բնագավառի վերջին փորձը կատարեց 1865-ին՝ դա Հոլցի պատրաստած էլեկտրական մեքենայի փորձարկումն էր, որով հիացել էր Ֆարադեյը:

Գնալով նա վհատվում էր, ուժերը դավաճանում էին:

1867-ին հանկարծամահ եղավ:

## ՃԵՐՄԱԿ ԽԱՐՈՒՅԿ

ԷԴՎԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ

Դեկտեմբերին, դեկտեմբերին,
Քամիները ամպեր բերին,
Եվ ամպերից փաթիլ-փաթիլ
Աստղիկները իրար եւոև
Ներքև իջան թեթև՛, թեթև՛...
Ջյունը ծածկեց գետը կայտառ,
Հսկա սարը, դաշտ ու անտառ,
Եվ ժպիտով ճերմակ, բարի
Նա դուրս կանչեց.— Արի՛, արի՛,
Դե, դո՛ւրս արի, փոքրի՛կ տղա,
Դուրս դրսում ուրախ խաղա:
Ձմռան համբույրն եմ քեզ բերել,
Ճերմա՞կ, ճերմա՞կ խարույկ վառել:

## ՁՄՌԱՆ ԻՐԻԿՈՒՆ

ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆ

Փափուկ, փափուկ, փափուկ ճանապարհին
շարված՝
Տներն ահա լռին սեղմվում են իրար:
Ագռավները այնքա՛ն, այնքա՛ն սև են թվում,
Որ նայում են իրար լուռ ու սարսափահար:

Ջյունը կամաց-կամաց կապույտով է ներկվում,
Եվ աստղերն են հանկարծ վառվում
հատիկ-հատիկ:
Դատերի տակ քամին մեղմ երգեր է երգում
Եվ երկինքն է դանդաղ իջնում ցանկապատին:

Վերում լուսինն է ջահի նման կախված,
Նրա լույսն է փռված խաղաղ հեռուներում,
Խոր հետքեր են թողնում գազանները այնտեղ՝
Գազանները ձմռան այբուբենն են գրում:

ՆԿ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

### Թեավոր խոսքեր

Հին Եգիպտոսի բնակիչները Նեղոսի կոկորդիլոսներին համարում էին աստվածային չարիքը կրողներ: Նրանց կերակրում էին, դիմում աղոթքով, որպեսզի մեղմեն նրանց պայրույթը: Կոկորդիլոսի նենգությունն ու արյան ծարավի լինելը առիթ են տվել վարմանալի հորինվածքների: Հին հունական գիտնական Էլիանոսը իր կենդանաբանական տրակտատում գրել է, որ կոկորդիլոսը բերանը ջուր է առնում և լցնում թեք արահետների վրա, որոնցով մարդիկ և կենդանիները իջնում են գետը: Հենց որ վռիի ոտքը սահում ու վայր է ընկնում, կոկորդիլոսը մոտ է սողում և լափում:

Ուրիշները պատմում էին, թե այդ հրեշը որսի մարմինը կուլ տալուց հետո, չգիտես ինչու, արցունքներով թրջում է նրա գլուխը և դրանից հետո միայն ավարտում իր սպրհուրելի խրախճանքը:

Կոկորդիլոսի այս «երեսպաշտությունն է», որ դեռևս հին դարերում պատճառ է դարձել մի արտահայտության, որ հայտնի է բոլոր ժողովուրդներին: Կո-



### ՈՐՔԱ՞Ն ԳՆԱՀԱՏԵՑԻՆ ԻՐԵ՞Ն

Մի անգամ, երբ նշանավոր շոտլանդացի բանաստեղծ Ռոբերտ Բյորնսը զբոսնում էր նավահանգստում, օգնություն աղերսող հուսահատական ճիչեր լսվեցին: Ինչ-որ մեկը խեղդվում էր: Նավահանգստում կանգնած նավից իրեն ջուրը նետեց մի նավաստի և ափ հանեց խեղդվողին, որը մի հարուստ առևտրական էր: Առևտրականը նավաստուն նվիրեց մեկ շիլլինգ: Դեպքի՝ վայրում հավաքված մարդիկ գովաբանում էին նավաստու հերոսությունը և միաժամանակ վրդովվում հարուստ մարդու ժլատության վրա:

— Հանգի՛ստ թողեք նրան,— ասաց Բյորնսը,— ի՞նչ կարող ես անել, եթե պարոնը իր կյանքը ընդամենը մեկ շիլլինգ է գնահատում:

## ԿՈԿՈՐԴԻԼՈՍԻ ԱՐՑՈՒՆՔՆԵՐ

կորդիլոսի արցունքներ՝ նշանակում է կեղծ արցունքներ, չինծու կարեկցանք:

Այնուամենայնիվ, արցունքների մասին այս պատմությունը հիմք ունի՞ արդյոք:

Կոկորդիլոսները իրոք թափո՞ւմ են արցունք, թե՞ դա հների վառ երևակայության արդյունքն է:

Դրան պատասխանելը դժվար չէ:

«Գովք հիմարության» երգիծանքի հեղինակ Էրազմ Ռոտերդամցին (16-րդ դար) գրում էր, որ մարդ տեսնելիս ոչ թե արցունքներ, այլ թույն է թափվում կոկորդիլոսի բերանից: Անցնում է չորս դար, բայց մինչև վերջին ժամանակները առույգ ոչինչ չգիտեին կոկորդիլոսի արցունքների մասին: Բոլորովին վերջերս այդ գաղտնիքը պարզեցին շվեդ գիտնականներ Ֆանգեն և Շմիդտ-Նիլսոնը: Պարզվեց, որ կոկորդիլոսներն, իսկապես, լացկան արարածներ են: Բայց դա ոչ թե զգացմունքների, այլ աղերի հետևանք է: Կոկորդիլոսի օրգանիզմում աղերի առատության պատճառով հատուկ գեղձեր են գոյացել, որոնց ծորանները տեղավորված են աչքերի մոտ: Եվ ահա, հենց որ այդ գեղձերն աշխատում են՝ կոկորդիլոսն աղի «արտասուք» է թափում: Եվ այսպես, կոկորդիլոսի արցունքները նենգության ու երեսպաշտության արցունքներ չեն և, առհասարակ, արցունքներ չեն: Բայց հին դարերի միտքի հետ կապված այս արտահայտությունը ապրում է լեզվի մեջ և, հավանաբար, դեռ շատ դարեր կապրի ժողովուրդների լեզվի մեջ:

Իսկ ինչո՞ւ լեզուն հրաժարվի դրանից: Լացիս են կոկորդիլոսները թե ոչ, բայց քիչ չեն մարդիկ, որ սիրում են չինծու արցունքներ հեղել ամեն մի առիթով, արցունքներ, որ հոսում են մարդկանց աչքերից, բայց, ըստ էության, «կոկորդիլոսի արցունքներ» են:

## ՀԵԾԱՆԻՎ ՊՐԵԶԻԴԵՆՏԻ ՀԱՄԱՐ

Ինչ-որ մեկն ասել է, թե Բրազիլիան հայտնի է կառնավալներով, Իսպանիան՝ ցլամարտերով, Ամերիկայի Միացյալ Նահանգները՝ պրեզիդենտների ընտրու-



թյամբ: Չորս տարին մեկ թեկնածուները ոտքի տակ են տալիս նահանգները, որպեսզի չորս տարով տիրանան Սպիտակ տանը, թռչում են ինքնաթիռներով, ավտոմեքենա նստում: Միտինգներում ճառեր են ասում, հարցազրույց են ունենում, գունավոր և սևասպիտակ նկարահանումներով հեռուստացույցի էկրաններից թափանցում են բոլորի տները:

Այստեղ ինչպե՞ս չհիշես հին ժամանակները, երբ մրցակցին հաղթելու համար բավական էր... մի հեծանիվը: 1897 թվականին Ու. Մաք-Քինլիի կողմնակիցներից մեկը Նոր Անգլիա նահանգում ռեկլամի համար պատրաստեց մի հսկանիվ վիթխարի հեծանիվ: Այդ ութտեղանոց տրիցիկլետը, որի եռնի անիվները ունեին 3,3 մետր տրամագիծ, 1110 կիլոգրամ էր: Բավականին երկար ժամանակ քաղաքից-քաղաք էր անցնում և ամենուրեք իր շուրջը անբանների հսկայական ամբոխներ էր հավաքում: Իհարկե, հեծանորդների համար հեշտ բան չէր այդ հսկային տեղից շարժելը, բայց նրանց չարչարանքը իզուր չանցավ: Ու. Մաք-Քինլին դարձավ պրեզիդենտ:

## ՌՈՍՍԻՆԻԻ ԽԱՅԹՈՑՆԵՐԻՑ

Իտալացի նշանավոր կոմպոզիտոր Ռոսսինին խայթող լեզու ուներ: Տոնախմբության ժամանակ մի երգչուհի բակում աղավաղումներով կատարում էր «Սևիլյան



սափրիչ» օպերայից Ռոզինի դերերգը: Ռոսսինին ուշադիր լսեց, ծափահարեց և ասաց.

— Ասացե՞ք, տիկի՛ն, դուք չէի՞ք ասի, թե ո՞վ է այս երաժշտության հեղինակը:

# ՄԱՆՈՒԿ ԱՆՈՒՆՈՎ ՏՂԱՆ

*ՌՈԲԵՐՏ ԲԱԲԼՈՅԱՆ*

Մի անգամ Թեոդոսիայում ես հետաքրքրվեցի, թե բացի Այվազովսկու պատկերասրահից, հայերին վերաբերող ուրիշ ինչ կա՞ քաղաքում:

— Օ՜, շատ բան,— ասաց գավառագիտական թանգարանի ծեր աշխատակիցը:— Օրինակ, դուք եղե՞լ եք սուրբ Սարգսի եկեղեցում:

— Ո՛չ,— խոստովանեցի ես:

— Ուրեմն՝ դուք չգիտե՞ք Մանուկ տղայի պատմությունը, որն իր տասնհինգամյակի օրը խեղդվեց ծովում: Այդ դեպքում լսե՛ք:

...Եթե Տրապիզոնից Պոնտական ծովով դեպի հյուսիս ուղիղ գիծ տանենք, ապա այն կհասնի մի կետի, որը կոչվում է Թեոդոսիա: Հազիվ տասը խիզախ կարող են պարծենալ, որ այդ տարածությունը կտրել անցնել են նավակով: Դրանցից էր ծովափին, Ջենովայի աշտարակի մոտ ապրող ներկարար Սարգիսը:

Նա ծնվել էր 1001 թվին, Երևան փոքրիկ քաղաքում, որ ընկնըվում էր սակավաջուր մի գետի ափին: Շատ պստիկ էր Սարգիսը, երբ հեռացավ ծննդավայրից: Հայրը՝ Մելքոնը վաճառեց տունը, այգին, կահ-կարասին և ճանապարհ ընկավ: Գնացի՜ն, գնացի՜ն և հասան Անի մայրաքաղաք: Մեծ քաղաքում հույսերը շատ են, բայց պակաս չեն նաև հոգսերը: Մելքոնը ներկատուն ուներ, մեծ համբավ էր վայելում Անիում, բայց ստիպված եղավ շուտով հեռանալ նաև այնտեղից: Թոնդրակեցի էր: Ազնիվ մարդ էր, արդարության համար էր պայքարում, հարկերի կրճատման, լավ կյանքի... Մի խոսքով, ընտանիքը նորից ճանապարհ ընկավ: Ուրիշ բան է, երբ թշնամուց կամ արհավիրքից ես փախչում, և այլ բան՝ ազգակիցներից: Ճանապարհին մահացավ կինը՝ Շուշանը: Անօթևան, հայրենիքից վտարված մարդը ոչ մի տեղ հանգիստ չի կարող գտնել, և նրանք քաղաքից-քաղաք էին գնում: Կոստանդնուպոլսում Սարգիսը ամուսնացավ: Տրապիզոնում ծնվեց որդին՝ Մանուկը: Լուսահոգի կինը կյանքը որդուն պարգևեց: Թոռի ծննդյան օրը Մելքոնի պապը Մանուկին նվիրեց ընկուզենու մի խաչաձև ճյուղ, որ կախված էր այժմ Մանուկի վզից: «Լա՛վ պահպանիր,— ասաց հայրը՝ Սարգիսը որդուն,— սա մեր տան մասունքն է»: Մի օր էլ Մելքոնը հեռացավ և այլևս ետ չեկավ: Թե ուր գնաց, ինչ եղավ՝ հայտնի չէ: Տրապիզոնում Սարգիսը երկար չմնաց, որդու հետ նավակով այստեղ եկավ: Այն ժամանակ Մանուկը չորեքթաթ էր քայլում:

Անցան տարիներ: Այն օրվա գիշերը, որ օրը լրանալու էր նրա տասնհինգ տարին, Մանուկի ականջին օրհասական ճիչեր հասան.

— Փրկեցե՜ք...

Մանուկն ընդոստ վեր թռավ: Հոր անկողինը դատարկ էր:

— Փրկեցե՜ք:

Մանուկը դուրս թռավ անկողնուց և վազեց ծովափ:

— Հայրի՜կ, հայրիիի՜կ...

Ծովը փոթորկվում է: Թվում է՝ հապարավոր օձեր գունդուկծիկ սուլում, ֆշշացնում և սողում են չորս կողմ: Լողում է Մանուկը, լողում է փրփրադեզ ալիքների միջով: Հոր ձայնը ուժ է հաղորդում նրան, ցույց տալիս ճանապարհը: Քիչ էլ, քիչ էլ, և նա արդեն նավակում էր, հոր կողքին:

— Հայրի՛կ, ինչո՞ւ ես մենակ ծով դուրս եկել: Ինչո՞ւ ինձ ոչինչ չես ասել:

— Ես ուզում էի թարմ ձուկ որսալ, վաղը հյուրեր կանչել, նշելու քո ծննդյան տասնհինգ տարին:

Սրընթաց եկող ալիքը ծածկեց երկուսին էլ:

Ծովը կարծես հեգնանքով մըռընչաց և նորանոր ալիքներ ուղարկեց նրանց կողմը: Հաջորդ օրվանից ընդմիշտ դատարկ մնաց ներկարար Սարգսի օթևանը:



Լսելով ծեր աշխատակցի պատմությունը, ես կարմացած բացականչեցի.

— Սպասե՛ք, բայց դա պատահել է Տավրիդայում:

— Տավրիդան էլ Ղրիմն է,— ժպտաց ծերունին:

— Ա՜խ, հա՛, ուզում էի ասել՝ Կաֆայում:

— Չէ՞ որ Կաֆան էլ Թեոդոսիան է:

— Հասկանալի է: Դուք, սակայն, ասացիք, որ հոր անունը Սարգիս էր:

— Այո՛, ռուսերեն կլինի՝ Սերգի:— Ծերունին շարունակեց.— Առավոտյան ծովափի հույն բնակիչները մի պատանու դիակ գըտան: Նրա վզին կախված էր ոսկե շղթայով փայտյա մի փոքրիկ խաչ:

— Արդյո՞ք այդ խաչը պահպանվել է,— հարցրի ես:

— Իհարկե: Մոտ եկեք ու նայեք: Ահա մարմարե մեծ խաչը, իսկ նրա ներսում փոքրն է:

— Ներեցեք, իսկ ինչո՞ւ է սև, քարի նման:

— Մի՞թե քարածուխը քարացած փայտ չէ:

— Սակայն ինչպե՞ս կապացուցեք, որ այս եկեղեցին կառուցվել է Մանուկի հիշատակին:

— Իսկ դուք կարդացեք,— ասաց ծերունին:

Ես կանգնած Թեոդոսիայի կիսավեր Սուրբ Սարգիս եկեղեցու մոտ, կարդացի. «Այս խաչը պաշտպանն է Մանուկ տղայի, որը ծովում խեղդվեց 1047 թվի սկզբին»:











*Լուսանկարները՝ ԷՄԻՆ ՍԱՖԱՐՅԱՆԻ*

# Ռուբեն Իգիթյան

Վերջերս Երևանի մանկական պատկերասրահում ցուցադրվեցին պատանի տաղանդավոր նկարիչ Ռուբեն Իգիթյանի նկարները:

Վաղահաս վարպետությունը, որ շատ կարճ ժամանակում ձեռք էր բերել ուշիմ ու դյուրազգաց պատանին, թույլ տվեցին, որ նա իր հասակին ոչ այնքան բնորոշ նկարներ ստեղծի: Այն միջավայրը, որտեղ ծնվեց ու անեց Ռուբիկը, պարարտ հող էր նրա տաղանդի ծաղկման համար: Հաճախակի հանդիպումները հանրապետության անվանի նկարիչների հետ, մանկական պատկերասրահի ոգեվորիչ առկայությունն ու իր բնական ձիրքը, ընդամենը մի քանի տարվա ընթացքում Ռուբենին դարձրին մեր աչքի ընկնող պատանի նկարիչներից մեկը:

Ռուբեն Իգիթյանին բնորոշ է գույների վառ, հեքիաթային երանգը, ուժեղ անհատականությունը և ազգային երփնագիրը: Թվում է, թե մի պատանի նկարչի մասին շատ են նման որակումները, որոնք սակայն ավելի հիմնավոր կլինեին ծավալուն վերլուծության դեպքում:

Ռուբենը, որին կյանքը անսահմանություն էր թվում, ապրեց ընդամենը տասնհինգ տարի, մինչդեռ նրա թողած ստեղծագործությունները ձեռք են բերել երկար տարիների կյանք:

ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ

# ՃԱՆԱՊԱՐՀԸ ԲԱՐՁՈՒՆՔՆԵՐ Է ՏԱՆՈՒՄ

Էլմիրա Անտոնյանին հիմա հեշտ չէ գտնել Երևանում: Եթե քաղաքում չէ, ուրեմն Մոսկվայում է, Լենինգրադում, Տաշքենդում, Տալլինում... Եթե մեր երկրում էլ չէ, ուրեմն այնտեղ է, ուր իրենց ռակետներն են խաչաձևում աշխարհի ուժեղագույն սեղանի թենիսիստուհիները...

Ահա հերթական մրցումից, հերթական քաղաքից, կարելի է ասել հերթական երկրից հայրենի օջախ է վերադարձել 19-ամյա աղջիկը: Շնորհավորանքներ, գրկախառնում, ծանոթների, ընկերուհիների, հարազատների ողջագուրանք: Բացում է ճամպրուկը: Նկարներ, գունավոր բացիկներ, թերթեր, գրքեր, փոքրիկ հուշանվերներ... և հետո ձեռքերի մեջ շողում է ոսկյա մեդալը: Նախ քույրը՝ Նարինեն է վերցնում, շոշափում օտար լեզվով դաջված գրությունը և հոգու մեջ փայփայում քրոջ մարզական փառքի ճանապարհը: Ոսկյա, արծաթե, բրոնզե՝ անհատական և թիմային առաջնություններում նվաճած մեդալների մեծ հավաքածուում ավելանում են նորերը: Դրանցից յուրաքանչյուրում Էլմիրան ներդրել է կամք, աշխատանք, անդուլ ջանքեր, սիրելի մարզչի՝ ՀՍՍՀ վաստակավոր մարզիչ Ռաֆիկ Հարությունյանի հարուստ փորձը, վարպետությունը:



Նարինե Անտոնյան

* * *

1973-ի ամռանն էր: Սովետական Միության ուժեղագույն սեղանի թենիսիստների հետ Էլմիրան գնում էր նոր հանդիպման: Տրամադրությունը բարձր էր:

— Ես ընդունվել էի Երևանի Խաչատուր Աբովյանի անվան հայկական մանկավարժական ինստիտուտի պատմության ֆակուլտետը,— պատմում է Էլմիրան,— և դա Աթենքում, Եվրոպայի պատանիների առաջնության մրցումներում, ինձ նոր ուժ տվեց. ես մեր թիմի աղջիկների, տղաների հետ մինչև վերջ պայքարեցի շատ ուժեղ հակառակորդների դեմ:

Հունաստանից Էլմիրա Անտոնյանը վերադարձավ Եվրոպայի չեմպիոնուհի դարձած (թիմային հաշվարկում): 9 օր շարունակ ՍՍՀՄ հավաքականի կազմում իր ռակետը խաչաձևեց Եվրոպայի ուժեղագույն սեղանի թենիսիստների հետ և արժանի հաղթանակ ձեռք բերեց:

Երբ հանդիպեցինք, նոր էր վերադարձել Բաքվից, որտեղ անցկացվել էր սեղանի թենիսի ՍՍՀՄ 26-րդ առաջնությունը: Էլմիրա Անտոնյանը այդ մրցումներում դարձավ իսկական հերոսուհի, նվաճելով չորս ոսկե մեդալ (մեկը թիմայինում, երեքը՝ անհատական): Ընդ որում, մենախաղերում հաղթելով սպորտի վաստակավոր վարպետ, աշխարհի ուժեղագույն սեղանի թենիսիստուհիներից մեկին՝ Զոյա Ռուդնովային (3:1):

— Այդ բոլորի համար, իհարկե, երախտապարտ եմ,— ասաց Էլմիրա Անտոնյանը:— Սակայն եղբայրական Ադրբեջանի մայրաքաղաքում ինձ հաճելի անհանգստություն և բերկրանք պատճառեց կրտսեր քույրըս՝ Երևանի № 56 դպրոցի 8-րդ դասարանցի Նարինեն: Նա Բաքու էր եկել ոչ թե մրցումներում



Էլմիրա Անտոնյան

ինձ համար «ցավելու», այլ որպես մասնակից: Նա արդեն դարձել է բավականին լուրջ մրցակից երկրի ուժեղագույն թենիսիստների համար: ՍՍՀՄ առաջնությունում Նարինեն հասավ մեծ հաջողության՝ գրավելով անհատական 5-րդ տեղը: Սպորտային լրագրողներից և մասնագետներից շատերը դա համարեցին մեծ անակընկալ: Բայց նրանք, ովքեր ճանաչում էին իմ մարզիչին, նրա կրտսեր սանուհու արդյունքը օրինաչափ գտան և ասացին, որ Նարինեն իմ «ամենավտանգավոր» մրցակիցն է դառնալու:

Նարինեն, իրոք, փայլուն դրսևորեց իրեն այս տարի: Նա ՍՍՀՄ առաջնությունում հինգերորդ տեղը գրավեց, «Դինամո» մարզական ընկերության չեմպիոնուհին դարձավ: Ավստրիայի Նյոթինգ քաղաքում հուլիսին անցկացված պատանիների Եվրոպայի առաջնությունում ավերդլովսկցի Լյուդմիլա Բազշուտովայի հետ նվաճեցին (թիմային) Եվրոպայի չեմպիոնուհիների կոչումը:

ՍՍՀՄ սեղանի թենիսի հավաքականի մարզիչները մեծ հույսեր են կապում Էլմիրայի կրտսեր քրոջ՝ Նարինե Անտոնյանի հետ:

ՌՈԲԵՐՏ ԴՈՎԼԱԹՅԱՆ

# Ճանաչի՛ր և պահպանի՛ր մեր բնաշխարհի հազվագյուտ ու անհետացող բույսերը

## ՍՈՍՆՈՎՍԿՈՒ ՏԱՆՁԵՆԻ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հայաստանը հարուստ է իր բազմատեսակ տանձենիներով: Գիտնականներն այստեղ հայտնաբերել են ավելի քան 16 տեսակի վայրի տանձենիներ: Դրանցից մի քանիսը խիստ հազվագյուտ են, մեծ արժեք են ներկայացնում գիտության համար, սակայն ներկայումս գտնվում են անհետացման եզրին: Դրանց բուսուտները և առանձին ծառերը ոչնչանում են գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները ընդարձակելու, անասուններ արածեցնելու և շինարարական լայն ծավալի աշխատանքներ կատարելու հետևանքով:

Այս տեսակների թվին է պատկանում նաև Սոսնովսկու տանձենին:

Փոքր ծառ է՝ մինչև 2 մ: Ընձյուղները փշոտ են, կարմրադարչնագույն, մոխրավուն խավով: Տերևները շատ մանր են, էլիպսաձև, 2—3 սմ երկարությամբ, սրածայր: Ծաղիկները սպիտակ են: Պտուղները մանր են, կանաչավուն: Արտաքին տեսքով ավելի շուտ նման է նշենու, քան տանձենու:

Հանդիպում է խիստ սահմանափակ տարածության վրա՝ Գառնի գետի հովտում, գիհու նոսր անտառներում, ինչպես նաև Վայքում, Սելիմի քարվանսարայի լեռնանցքի մոտակայքում: Հայտնաբերել և նկարագրել է բուսաբան Ֆեդորովը:

Սոսնովսկու տանձենին գերադասում է չոր, քարքարոտ, անբերրի ու անմշակ լանջերը: Երբ մշակում են դաշտերը, ոռոգում ցանքերը, թունաքիմիկատներ օգտագործում, այդ ամենը խիստ բացասաբար է ազդում այս տանձենու վրա, որի հետևանքով երկրի երեսից անհետանում են նրա առանց այն էլ հատուկենտ նմուշները: Ներկայումս չափազանց քիչ Սոսնովսկու տանձենիներ են մնացել, որի պատճառով էլ այս տեսակը մտցված է «Կարմիր գրքի» մեջ և ենթակա է առաջնահերթ ուշադրության և պահպանության:




Լույս է տեսնում 1923 թվականից

№ 12 դեկտեմբեր 1976 թ.

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ Նկ. ՌՈՒԲԵՆ ԻԳԻԹՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 06783 Պատվեր 1919: Տպաքանակ՝ 73806: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 15/XII 1976 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Ա. Մյասնիկյանի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

## ԲԱՌԱՇՂԹԱ-ԽԱՉԲԱՌ

(Աշխարհագրություն)

1. Հրվանդան՝ Աֆրիկայի արևմտյան ափին: 2. Գետ՝ Աֆրիկայում: 3. Ռոնայի վտակը: 4. Գետ՝ Միջին Ասիայում: 5. Գետ՝ Հարավային Ամերիկայում: 6. Լեռներ՝ Չինաստանում: 7. Քաղաք՝ Իտալիայում: 8. Եվրոպական պետության մայրաքաղաք: 9. Քաղաք՝ Չինաստանում: 10. Նահանգ՝ ԱՄՆ-ում: 11. Ենիսեյի աջ վտակը: 12. Թերակղզի՝ Ասիայում: 13. Քաղաք՝ Նեղոսի ափին: 14. Քաղաք՝ Ճապոնիայում: 15. Գետ՝ Վրաստանում: 16. Գետ՝ Հարավային Ասիայում: 17. Քաղաք՝ Բելոռուսիայում: 18. Ջրվեժ՝ Սունա գետի վրա: 19. Քաղաք՝ ԱՄՆ-ում: 20. Նավահանգիստ՝ Ֆրանսիայում: 21. Միութենական հանրապետության մայրաքաղաք: 22. Գետ՝ ՍՍՀՄ-ում: 23. Պետություն՝ Հարավային Ամերիկայում: 24. Քաղաք՝ ստորին Պովոլժիեում: 25. Գետ՝ Կանադայում: 26. Գետ՝ Մերձբալթիկայում: 27. Գետ՝ Հյուսիսային Իտալիայում: 28. Նավահանգիստ՝ Հոլանդիայում: 29. Հաննոսի վտակներից:

ԱՐՇԱԿ ՋԱԼԱԲՅԱՆ





ՆԱՐԻՆԵ ԳՐԻԳՈՐՅԱՆ, 10 տ.
Երևան



ԼՈՒՍԻԿ ԲԱՐՍԻԿՅԱՆ, 11 տ.
Գադրութի շրջան, գյուղ Բաղնարի